Այրի Տիկին Հայկանուշ Քիւրքճեան, Ժաքօ Քիւրքճեան, Ժագլին Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Միհրան Քիւրքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հայկազ Քիւրքճեան եւ զաւակները (Ֆաթեա), Տէր եւ Տիկին Յարութիւն Քիւրքճեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Աչըկէօզեան, Տէր եւ Տիկին Մանուկ Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Գնօզլօք, Տէր եւ Տիկին Զէյ-պէկեան Երամ, Տէր եւ Տիկին Պօյա-ճեան Մարտիրոս եւ զաւակները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին,

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԻՒՐՔՃԵԱՆԻ

(62 տարեկան – Ֆաթցացի)

մահը որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 6ին, Կրեմլէն – Պիսէթրի հիւանդանոցը:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երկուշաբթի, ժամը 15.45ին, Փա-րիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Բաշանի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ԾԱԽՈՒ Է

Փավիլիոն մը, երեք սենեակ, մեծ խո-հանոց, բակին մէջը հանկառ, ամէն յար-մարութիւն (թու – քոնֆոռ):

Դիմել ՄՈՌԻՋԻ, 18, Ռիւ տէ Պլէօէ, ԱԼՖՈՐՎԻԼ: Հեռաձայն Անթրփօ 51-66:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

### ԵՒ ՇԻՐԻՄՆԵՐՈՒ ԱՅՑ

Ողբացեալ ԸՆԿ. ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱ-Նի մահուան երկրորդ տարելիցին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատար-ուի Փարիզի եկեղեցիին մէջ, այս Կիրակի, յաւարտ պատարագի:

Կէս օրէ յետոյ ժամը 3ին, Թիյէի գե-րեզմանատան այց, ընկերներ Գ. Բալյա-խանի, Ջամալեանի, Բաքաշալի, Գ. Սարգիսբէկեանի, Օհան Կարոյի եւ Պեր-ճուհի Բարսեղեանի շիրիմներուն:

Հաւաքուիլ ժամը 3ին, գլխաւոր մուտ-քին առջեւ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Վասիկ Տէր – Դաւթեան եւ զաւակները, Տոքթ. եւ Տիկին Ռուբէն Տէր – Դաւթեան եւ զաւակը կը ծանու-ցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պի-տի կատարուի իրենց մօր եւ մեծ մօր՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ – ԴԱՒԹԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս Կի-րակի առաւօտ, Շաւիլի Ս. Գրիգոր-Լու-սաւորիչ եկեղեցւոյ մէջ, ժամը 10.30ին: (Ռիւ տէ 3 Շանթիէ):

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի Նոր Սերունդի կողմէ: Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ ուշ գիշեր, Էթու-ալի սրահին մէջ 1 Քուռ Կամպէթա, (Փը-լաս տիւ Փօն):

Գեղարուեստական ճոխ բաժին, հաճելի անակնկալներ եւ առատ կեր ու խում: Սիրով կը հրաւիրուին ծնողքները:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Նոր շրջանի բացման գեղարուեստա-կան ցերեկոյթը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 10ին, Մշակոյթի Տան մէջ, Կիրակի ժամը 16ին:

Նախագահի բացման խօսք՝ Մ. ՊԱՐ-ՍԱՄԵԱՆ:

Օրուան բանախօս՝ ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

Արտասանութիւն՝ Արա Գրիգորեան,

Երգ՝ Օր. Աստղիկ Քէօսէեան,

Ջութակ՝ Ս. Քաջեան:

Ներկաները պիտի հիւրասիրուին թէ-յով եւ կարկանդակով:

Մուտքը ազատ է:

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի Մարսէյլի «Ռոստոմ» խումբի կողմէ,

### ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 22էն մին-չեւ լոյս:

Մասնակցութեամբ հանրածանօթ փո-ղահար ՄԱՐՍԷԼ ՓԵՐԷՆԻ եւ իր նուա-գախումբին ու երգչուհի ՀԻԿԿԷԹ ԼԸ-ՔԱՅԻ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը մէջ-մասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի մասնաճիւղերու ընկերու-հիները, այս Երկուշաբթի, ժամը 15ին, Մշակոյթի Տան սրահին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## Հ. Յ. Դ.

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր կո-միտէի ընկերները կը հրաւիրուին ընդհ. ժողովի, այս Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը:

ՄԱՐՍԷՅԼ, Սեն Ժերոմ,— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շա-բաթ, ժամը 21ին, նախորօք որոշուած հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրա-կարգ:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21-ին, սովորական հաւաքատեղին:

### ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի կողմէ, ի նպաստ Հայ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին:

Այս Կիրակի ժամը 15.30ին Արլաք-Սոլֆերինոյի սրահը, 235 Րիւ Մունէյտա:

Գեղարուեստական ճոխ բաժին, խըմ-բերգ, արտասանութիւն, մեներգ եւ ա-նակնկալներ:

Երիտասարդներու կողմէ կը ներկա-յացուի զաւեշտ մը՝

ՍԵ՞Ի ԹԷ ՃԵՐՄԱԿ

Մուտք՝ 1 Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)





## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կառվարենց խումբի կողմէ

Այս Կիրակի, ժամը 15ին Սարսէլի քաղաքապետարանի սրահին մէջ:
Կը ներկայացուի ռուսական կեանքէ քաղուած՝

### ԱՆԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

Տրամ, 4 արար, 3 պատկեր:

Ղեկավարութեամբ Պ. ՇԻՇՄԱՆԵԱՆի

ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ.— Փորթ տը լա Շափելէն 268 թիւ, իջնել Սարսէլ, Փլաս Տիւ 11 Նովամպր, կամ շոգեկառք՝ Կառ տիւ Նորէն ժամը 13.45ին, եւ 15.10, իջնել Վիլիէ լը Պէլ, ուրէ առնել նոյն թիւ օթօպիւսը եւ իջնել նոյն տեղը:

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

### ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

## ՏԱՐԵԿԱՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔԸ

Շաբաթ, Դեկտեմբեր 2էն, Կիրակի, իրիկուն Դեկտեմբեր 10
Բարեգործականի սրահներուն մէջ 11 Սքուար Ալպօնի, Մէթրօ Փասի

Այս տարի, յաւելեալ նոր բաժին մը՝

### ԶՈՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ

Ուր պիտի ներկայացուին հայ արուեստագէտներու զանազան գործերը:

Նկարներ, մանրանկարչութիւն, Ատլաս Հայաստանի պատմութեան եւ աշ-խարհագրութեան, գրագէտներու կողմէ ստորագրուած գիրքեր, սալեր եւն.:

ՀՈՆ ԿԸ ԳՏՆԷՔ ՆԱԵՒ

Մարգրիտներ, ցոհարեղէնի տուփեր, ձայն – պատկերասփիւռ, թրանզիսթօր, մոլէզ եւ կոկորդիլոս պայուսակներ, ճամբորդութեան պայուսակներ, թրուս, ժերզէ հագուստներ, փարֆէօն, նայլըն զուլպայ, գրամեքենայ, փիւլեր այր մար-դոց եւ կիներու համար, այր մարդոց չապիկ, մետաքսէ փողկապ, ֆանթէզի ցոհարեղէններ, սեղանի սպասներ, խաղ ալիքներ եւն. եւն.:



### ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Աննիկ Պագրճեան, աղջիկը Արմենուհի եւ Պագրճեան եղբարք կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի 17 Դեկտեմբեր, Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իրենց ամուսնոյն, հօր եւ եղբօր՝

ԱՐՇԱԿ ՊԱԳՐՃԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, ինչպէս նաեւ Պագրճեան, Տէր Գալուստեան գերդաստաններու համայն ննջեցելոց հոգւոյն ի յիշատակ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

## ՆՈՒԷՐ

Տարաբախտ Գրիգոր Գոստիկեանի յիշատակին, փոխան ծաղկեպսակի Լիլաջէն, Գալֆայեան ընտանիքը յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ս. Թէհլիրեան սրահին:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ՆՈՒԷՐՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Տարօնցի Տէր եւ Տիկին Եղիա Մելքոնեան իրենց մեծ հայրենակից Գասպար Շեխիկեանի քաղցր յիշատակին 25 Ն. Ֆ. կը նուիրեն Թէհլիրեան սրահին: (Ստանալ «Յառաջ»էն), եւ 25 Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման:

×

Մոնփէլիէէն Այրի Տիկին Արաքսի Նաճարեան, իր ամուսնոյն Խորէն Նաճարեանի մահուան տարելիցին առթիւ կը նուիրէ յիսուն Ն. Ֆ. Ս. Թէհլիրեան սրահին: Նաեւ նոյն առթիւ Սարգիս եւ Նուարդ Փափազեան իրենց մօր Այրի Տիկին Մաքրուհի Փափազեանի մահուան երկրորդ տարելիցին առթիւ կը նուիրեն 50 Ն. Ֆ. Մոնմորանսիի ծերանոցին:

×

Ֆ. Կ. Խաչի ընկերուհիները իրենց նախագահուհիին ողբացեալ Սաթենիկ Տէր-Դաւթեանի մահուան քառասունքին առթիւ յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Շաւիլի դպրոցին:

×

Այրի Տիկին Վարդանոֆ փոխան հոգեհանգիստի իր ամուսնոյն՝ Վահրամ Վարդանոֆի մահուան քառասունքին առթիւ 50ական Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերու օգափոխութեան կայաններուն: (Ստանալ Յառաջէն):

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՅԻՍ 12ԻՆ
ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ

Տարօնի ժողովրդական երգերու ունկնդրութիւն:

ԱՐՄԵՆՈՒՀԻ ԳԵՒՈՆԵԱՆԻ

կողմէ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Շաւիլի վարչութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Լինտա Աբելեանի իր հօրեղբօրորդիին Պ. Խոլազեանի մահուան առթիւ, որ տեղի ունեցած է Պրազիլի մէջ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Տէր եւ Տիկին Գաբրիէլ Գինոսեան, զաւակները եւ ընտանեկան բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով եւ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց անհուն վշտին՝ զեռատի ԱՐՄԷՆՈՒՀԻ ԳԻՆՈՍԵԱՆԻ (18 տարեկան, արկածի զոհ) անակնկալ եւ զառնակսկիծ մահուան առթիւ:

×

Պոմոնի եւ շրջակայքի Թաղականութիւնս յիսուն Ն. Ֆ. շնորհակալութեամբ ստացած է Պէլֆորբոնակ Տիկին Թագուհի Տէր Եղեայեանէ, եկեղեցիիս պայծառութեան համար: Թաղականութիւնս առ ի երախտագիտութիւն Տէր ողորմեայի արարողութիւն կատարել տուաւ ի յիշատակ իր զաւակին Հրայրի: Տիկին Ազանի եւ Վարդանոյշ Նազարեանի, ինչպէս նաեւ իր գերդաստանի հին եւ նոր բոլոր ննջեցեալներուն եւ նահատակներուն հոգւոց ի յիշատակ:

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին կողմէ, Կիրակի, Դեկտեմբեր 17, կէսօրէ ետք ժամը 17ին, Մշակոյթի Տան մէջ:

Գեղարուեստական բաժին:

Կը հրաւիրուին ընկերները, Նոր Սերունդի անդամները եւ երէց ու երիտասարդ համակիրներ:

### ՆԻՍԻ ԿՐՕՆ. ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ ԸՆՏՐԱԿԱՆ ԱԶԴ

Վարչութեանս պաշտօնավարութեան շրջանը լրացած ըլլալով, պիտի ձեռնարկուի նոր ընտրութեան: Առ այդ կը խնդրուի շրջանիս բոլոր ազգայիններէն մինչեւ տարեգլուխ անդամագրուիլ Ընկերակցութեանս եւ կամ վերանորոգել իրենց անդամագրութիւնը, դիմելով Եկեղեցւոյ Բանկալը եւ կամ վարչութեան անդամներուն, ստանալով համապատասխան ընկալագիր:

Անդամագրութիւնները պիտի դադրեցուին տարեգլխուն ճշգելու եւ կազմելու համար ամբողջական ցանկը յառաջիկայ Ընդհ. Ժողովի ընտրող եւ ընտրելի անդամներուն եւ կատարելու համար ընտրութիւն համաձայն Ընկերակցութեան Մայր - Կանոնագրի տրամադրութեանց:

Կը խնդրուի անդամագրութեան ընկալագրով ներկայանալ Ընդհ. Ժողովին, որուն թուականը պիտի ծանուցուի ատենին:

Բոլոր այն ազգայինները որոնք կը փափաքին թեկնածու ներկայանալ վարչական ընտրութեանց, կը հրաւիրուին իրենց թեկնածութիւնը տեղեկացնել Դիւանիս:

ԴԻՒԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ
ՆԻՍԻ ԿՐՕՆ. ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

## ԾԱԽՈՒ Է

Փավիյեոն մը, երեք սենեակ, մեծ խոհանոց, բակին մէջը հանկառ, ամէն յարմարութիւն (թու - քոնփոռ):

Դիմել ՄՈՌԻՋԻ, 18, Րիւ տէ Պլէօէ, ԱԼՖՈՐՎԻԼ: Հեռաձայն Անթրփօ 51–66:

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Գրիգոր Ճերմակեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Տարագճեան եւ զաւակները, Այրի Տիկին Յ. Արապեան, Տէր եւ Տիկին Սաղաթէլեան, Տէր եւ Տիկին Լիւլէճեան, Գրիգոր, Թագւոր եւ Բարսեղ Պաղտասարեան ընտանիքները, Պետրոսեան, Սթաւեան եւ Ինճէեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք իրենց ներկայութեամբ, հեռագրով կամ նամակով մասնակից եղան իրենց սուգին, իրենց մօր, քրոջ, մեծ մօր եւ ազգականին՝

ՎԱՍԻԼՈՒՀԻ ՃԵՐՄԱԿԵԱՆԻ

մահուան առթիւ:

## Réveillon DU Nor Séround

ԴԵԿՏԵՄԲԵՐ 24ԻՆ

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի մասնաճիւղերու ընկերուհիները, այս Երկուշաբթի, ժամը 15ին, Մշակոյթի Տան սրահին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ տեղւոյս Կրթական Մարմնի
Հովանաւորութեամբ Ս. Պ. Պ. Եկեղեցւոյ Հոգաբարձութեան
Տեղի կ'ունենայ Կիրակի 24 Դեկտեմբեր 1961
երեկոյեան ժամը 21էն մինչեւ լոյս
SALLE VOLTAIRE ի մէջ
Պատւոյ նախագահութեամբ Քաղաքապետ
**Monsieur BLEUSE** ի
Մասնակցութեամբ **ROSY ARMEN** ի
**Jean-Claude Pelletier et son Quartett**
ՍՊԱՆԱԿԱՆ ՊԱՐԱԽՈՒՄԲ **Elias de Quiros**
ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ **VECCIANA**

ՃՈԽ ՊԻՒՖԷ

Հրաւիրատոմսերը ստանալու համար դիմել.—
CAFÉ PHILIPPE, 6 Bd. Carnot, Alfortville, Tél. ENT. 61-35

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## 1962 ԳՈՅԱՄԱՐՏ ՕՐԱՑՈՅՑ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ, ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻ:

Ճոխ բովանդակութեամբ եւ ընտիր նկարներով:

ՓԱՐԻԶԻ համար դիմել Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, Հրանտ - Սամուէլ գրատունը, եւ «Յառաջ»ի խմբագրատունը:

ՄԱՐՍԷՅԼ

PHOTO - REX, 2 Rue Bernard du Bois

## ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ – ԴԱՒԹԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Սաթենիկ Տէր – Դաւթեանի մահուան քառասունքին առթիւ իր զաւակները՝ Տէր եւ Տիկին Վասիլ Տէր – Դաւթեան եւ Տէր եւ Տիկին Ռուբէն Տէր – Դաւթեան հետեւեալ նուէրները կ'ընեն.—

Պէյրութի Նշան Փալանճեան ճեմարա – նին՝ 500 Ն. Ֆ.։

Դպրոցասէրին 250 Ն. Ֆ.։

Ս. Մուրատ վարժարանին 250 Ն. Ֆ.։

Կապոյտ Խաչի Շրջ. վարչութեան՝ 250։ (Ստանալ «Յառաջ»էն)։

×

Նոյն առթիւ իր խնամին՝ Տիկին Քու- Ֆինալ հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղին ։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգ. դպրոցի Կրթ. մարմինս շնորհակալութեամբ ստա- ցած է.— Տէր եւ Տիկին Արամ Օհաննեա- նէն՝ քսան Ն. Ֆ., նուէր դպրոցին, իրենց մօր՝ Տիկին Սրբուհի Պաղտասարեանի (ծնեալ Երլանճեան) զառն մահուան առ- թիւ։

Նոյն տխուր առթիւ փոխան ծաղկեպը- սակի, Տէր եւ Տիկին Կարօ Ժամկոչեանէ՝ քսան Ն. Ֆ. դպրոցին, Ֆ. Կ. Խաչի մաս- նաճիւղին քսան Ն. Ֆ.։ Տիկին Թագուհի Աբրահամեանէ հինգ Ն. Ֆ. դպրոցին, Տէր եւ Տիկին Գ. Պօյաճեանէ 10 Ն. Ֆ. դպրոցին, Տէր եւ Տիկին Արամ Օհաննեա- նէ տասը Ն.Ֆ. դպրոցին, իրենց զաւկին՝ Ժիրայրի վինուորութենէ վերադարձին առթիւ։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Պօմոնի Թաղ. Խորհուրդս շնորհակա – լութեամբ հետեւեալ նուէրները ստացած է Պ. Խորէն Մխճեանի յուղարկաւորու – թեան առթիւ փոխան ծաղկեպսակի, ի նպաստ եկեղեցւոյ պայծառութեան ։

Պ. Պ. Միհրան Օհանեան՝ քսան Ն. Ֆ., Թագւոր Մանասճեան՝ տասը, Լեւոն Քա- նարեան տասը Ն. Ֆ.։

Ալֆորտւիլէն՝ Պ. Պ. Միհրան Օհանեան 10 Ն. Ֆ., Մխսաք Թրիքեան՝ հինգ Ն. Ֆ.։

Նմանապէս Պ. Օննիկ Պետրոսեանի յու- ղարկաւորութեան առթիւ փոխան ծաղ – կեպսակի եկեղեցւոյս կը նուիրէ 10 Ն.Ֆ. Պ. Ռուբէն Ասարլըգեան ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փա- րիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քաւէլի սրահին մէջ, Դեկտեմբեր 28 – ին, Հինգշաբթի օր ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Պ. Մկրտիչ Տէր Եղիաեան՝ Մառաշի Ենիճէ գիւղէն, կը փնտռէ մօրաքրոջ զա- ւակները Պ. Պ. Փանոս, Սարգիս եւ Օր. Հեղինէ (Հառնիկ) Հալաճեան, հօրը ա- նունը Յարութիւն եւ մօրը անունը Գո – հար, Մառաշի Տէմրէկ գիւղէն ։ 1916 – 1917ին Դամասկոս տարին եւ Պէյրութի Ամերիկեան որբանոցը դրին։ Անկէց ի վեր, ոչ մէկ լուր։ Անոնք որոնք ծանօ – թութիւն ունին, թող բարեհաճին տեղե – կացնել Հայոց եկեղեցին, 15 Րիւ Ժան Կուժօն ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին կողմէ, Կիրակի, Դեկտեմբեր 17, կէսօրէ ետք ժամը 17ին, Մշակոյթի Տան մէջ։

Գեղարուեստական բաժին ։

Կը հրաւիրուին ընկերները, Նոր Սե – րունդի անդամները եւ երէց ու երիտա- սարդ համակիրներ ։

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը

Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ ։ Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին։

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16 – 24, Ամպասատէօրի սրահին մէջ։



## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

## ՏՕՆԱԾԱՌԻ ՀԱՆԴԷՍԸ

17 Դեկտեմբեր, Կիրակի օր

Վարժարանին մէջ

## ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միու – թեան կազմակերպած խնջոյքը, այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Խրիմ – եան դպրոցին մէջ (Իսի)։

Գեղարուեստական ճոխ բաժին, մաս – նակցութեամբ տեղւոյս կարող ուժերուն։

Սիրայօժար իրենց արեւելեան նուագով կը մասնակցին հայրենակիցներ՝ Մ. Շիր- վանեան, Շ. Կազեան (ուտ, ջութակ) ։ լաւ կերուխում, խնամքով պատրաս – տուած վարչութեան կողմէ։

Մուտքը ազատ է ։

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Terness Méiro Ternes

Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 3ին, Պիտի բանախօսէ

ԼԻՒՔ – ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ

Հայ երաժշտութեան մասին եւ դաշ – նակի վրայ պիտի նուագէ հայկական կը- տորներ ։ Երիտասարդներ սիրով հրա – ւիրուած են ։

Մուտքը ազատ է ։



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը, այս Շաբաթ, կէսօրէ վերջ, սովորական ժամուն, սովորական վայրը ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Հայ երիտասարդ մը, որ փափաքէր՝ արտածումի եւ ներածումի կարեւոր գոր- ծի մը մէջ ապագայ ունենալ ։

Ներկայանալ ամէն օր՝

Յ. ՓԱՓԱԶԵԱՆ հաստատութիւն՝

3a, Rue Lafayeste, Marseille

## ԾԱԽՈՒ Է

Փավիյեոն մը, երեք սենեակ, մեծ խո- հանոց, բակին մէջը հանկառ, ամէն յար- մարութիւն (թու – քոնֆոռ)։

Դիմել ՄՈՌԻԶԻ, 18, Րիւ տէ Պլէօէ, ԱԼՖՈՐՎԻԼ։ Հեռաձայն Անթրփօ 51–66։



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազ – դերու համար են, չորրորդ էջը ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան ։

Օր. Սօնա եւ Անէթ Հանքսեան, Տէր եւ Տիկին Վարդան Խաչիկեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Միսակ Խաչիկեան եւ զաւակները (Սան Ֆրանսիսքօ), Պ. Մլեհ Խաչիկեան (Ս. Ֆրանսիսքօ), Զուլալեան, Խաչիկեան, Քիւրօղլեան, Նալպանտեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց հօր, քերայրին եւ ազգականին՝

ՄԻՍԱԿ ՀԱՆՔՍԵԱՆԻ

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ 61 տարեկանին, իր բնակարանին մէջ:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Զորեքշաբթի, ժամը 13·45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Անկէնի հին գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Միհրան Կարապետեան կը նուիրեն հարիւր Ն. Ֆ. Մշակոյթի Տան, ի յիշատակ համայն նահատակ Հայութեան վրիժառուներէն՝ անմահ հերոս Ս. Թէհլիրեանի սրահին նորոգութեան ծախքերուն:

×

Մշակոյթի Տան մէջ տեղի ունեցած Պ. Յ. Շաքարեանի հարսանիքին առթիւ Տէր եւ Տիկին Կարապետ Քէօլէեան Թէհլիրեան սրահին պիւֆէին նուիրած են յիսուն Ն. Ֆ. արժէքով պնակներ եւ գաւաթներ:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Տէր եւ Տիկին Պօղոս Յակոբեան եւ Տէր եւ Տիկին Զօհրապ Մուրատեան կը նուիրեն 50ական Ն. Ֆ. Փարիզի Հայ Մշակոյթի Տան, փոխան ծաղկեպսակի, Բաբգէն Փափազեանի մահուան առթիւ:

×

ԱԼՖՈՐՎԻԼ.— Պ. Մարտիրոս Յակոբեան երեսուն Ն. Ֆ. եւ Պ. Պօղոս Փափազեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Փարիզի Հայ Մշակոյթի Տան, փոխան ծաղկեպսակի, Գրիգոր Գոստիկեանի եւ Բաբգէն Փափազեանի մահուան առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ս. Մինասեան» ենթակոմիտէն պարտք կը զգայ շնորհակալութիւնները յայտնել այն բոլոր նուիրատուներուն, որոնք «Դաշնակցութեան» երկու ծաղկեպսակներուն իրենց մասնակցութիւնը բերին, յարգելով իր երկու հաւատաւոր եւ նուիրեալ ընկերներուն՝ Գրիգոր Գոստիկեանի եւ Բաբգէն Փափազեանի յիշատակը:

Այս առթիւ ծաղկեպսակներէն գոյացած ընդհ. գումարին մնացեալը յատկացուած է Փարիզի Հայ Մշակոյթի Տան Ֆոնտին, որ է 339 Ն. Ֆ.:

## ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Գարեգին Նազգաշեան իրենց սիրելի հօր Մարկարոս Նազգաշեանի մահուան առթիւ կը նուիրեն.—

Կապոյտ Խաչի երեսուն Ն. Ֆ., Մշակոյթի Տան երեսուն, Աղքատախնամին քսան, «Յառաջ»ին քսան Ն. Ֆ.:

Միեւնոյն առթիւ Տէր եւ Տիկին Բիւզանդ Ջինոզեան քսան Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչին:

(Ստանալ «Յառաջ»էն):

×

Շավիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր Դաւթեան եղբայրներէ հարիւր Ն. Ֆ. եկեղեցւոյ օծման տարեդարձին առթիւ: Նոյն առթիւ ոմն՝ յիսուն Ն. Ֆ.:

## ՊԱՏԱՐԱԳ ՇԱՎԻԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյս օծման 4րդ տարելիցը կը տօնուի հանդիսաւոր կերպով: Այս առթիւ կաթ. Պատուիրակ եւ Փարիզի Առաջնորդ Գերաշ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ հրաւիրուած է պատարագելու եւ քարոզելու: Երգեցողութիւնները պիտի կատարուին բազմաձայն, Մայր Եկեղեցւոյ երգիչներուն մասնակցութեամբ եւ երաժշտապետ Պ. Նշան Սերգոյեանի ղեկավարութեամբ:

Յաւարտ Ս. պատարագի մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյս շինութեան ծախքերուն մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց հանգստեան համար: Սկիզբ ժամերգութեան 8·30, Ս. պատարագ ժամը 10ին:

Շավիլի եկեղեցւոյ Շէք – Փոսթալի թիւն է՝ 14827 – 18, Փարիզ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Այրի Տիկին Մարիամ Գոստիկեան, Պ. Վարդգէս Գոստիկեան, Տէր եւ Տիկին Գէորգ Էլմայեան եւ ընտանեկան պարագաներ, իրենց շնորհակալութիւնները կը յայտնեն Արեւմտ. Եւրոպայի Կեդր. Կոմիտէին, Փարիզի Շրջ. Կոմիտէին, Ալֆորվիլի Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին, Ալֆորվիլի Հայ Մարզականին, Փարիզի Հաճընցիներու Հայր. Միութեան, Փարիզի Հայ Մշակոյթի Տան նուիրատուներուն, եւ բոլոր անոնց որոնք ծաղկեպսակներով, նամակներով եւ իրենց ներկայութեամբ մասնակից եղան իրենց սուգին՝ ողբացեալ

ԳՐԻԳՈՐ ԳՈՍՏԻԿԵԱՆԻ (Սէօլէօղցի)

մահուան առթիւ:



ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

## ՏՕՆԱԾԱՌԻ ՀԱՆԴԷՍԸ

17 Դեկտեմբեր, Կիրակի օր վարժարանին մէջ

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին կողմէ, Կիրակի, Դեկտեմբեր 17, կէսօրէ ետք ժամը 17ին, Մշակոյթի Տան մէջ:

Գեղարուեստական բաժին:

Կը հրաւիրուին ընկերները, Նոր Սերունդի անդամները եւ երէց ու երիտասարդ համակիրներ:





## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, առաւօտեան ժամը 10·30ին, Վատիկանի ռատիոկայանէն հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուի հետեւեալ ալիքներու վրայ:

Միջին ալիք.— 196 մեթր, կարճ ալիք՝ 31·10, 25·55, 19·84:

Պիտի քարոզէ Գերապատիւ Ներսէս Ծ. Վ. Սէթեան, նիւթ ունենալով «ԵԿԵՂԵՑԻՈՅ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԸ»:

## ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Խրիմեան դպրոցին մէջ (Իսի):

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ տեղւոյս կարող ուժերուն:

Սիրայօժար իրենց արեւելեան նուագով կը մասնակցին հայրենակիցներ՝ Մ. Շիրվանեան, Շ. Կազեան (ուտ, ջութակ): Լաւ կերուխում, խնամքով պատրաստուած վարչութեան կողմէ:

Մուտքը ազատ է:

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes, Méiro Ternes

Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը 3ին, Պիտի բանախօսէ

ԼԻՒՔ – ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ

Հայ երաժշտութեան մասին եւ դաշնակի վրայ պիտի նուագէ հայկական կտորներ: Երիտասարդներ սիրով հրաւիրուած են:

Մուտքը ազատ է:

## ՆՈՒԷՐ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻՆ

Վերժին Ջիլինկիրեան (նոր անունով Տիկին Փէրէզներեան) 50 Ն. Ֆ. կը նուիրէ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէի բոլոր ընկերները կը հրաւիրուին ընկերական ընդհ. ժողովի, այս Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլան Կ. Կոմիտէի ներկայացուցիչները:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը, այս Շաբաթ, կէսօրէ վերջ, սովորական ժամուն, սովորական վայրը:

ՃԻՊԷՅԼԻ Նախկին սանուց (Յուշամատեան)ի ժողովը այս Կիրակի, ժամը ճիշդ 3ին, Քաֆէի սրճարանը: Կարեւոր օրակարգ:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները :*

*Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ:*

*Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն Յառաջի վարչական գործը :*

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
ՅԱՌԱՋԻ

### ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Մարսէյլի բժշկական համալսարանի վերջին դասարանէն (դեղագործի ճիւղ) Օր. Ժագլին Թիւթիւնճեան, 22 տարեկան 10 յաջողակներուն մէջը եղած է* էնթերնայի 27 *թեկնածուներուն :*

### ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Աննիկ Պագրճեան, աղջիկը Արմենուհի եւ Պագրճեան եղբարք կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի 17 Դեկտեմբեր, Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իրենց ամուսնոյն, հօր եւ եղբօր՝*

ԱՐՇԱԿ ՊԱԳՐՃԵԱՆԻ

*մահուան քառասունքին առթիւ, ինչպէս նաեւ Պագրճեան, Տէր Գալուստեան գերդաստաններու համայն ննջեցելոց հոգւոյն ի յիշատակ :*

*Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները :*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Տէր եւ Տիկին Ստեփան Տէր-Ստեփանեան եւ Տէր եւ Տիկին Րաֆֆի Տէր-Ստեփանեան եւ իրենց զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց մօր եւ հօրաքրոջ՝*

ԱՆԱՀԻՏ ՏԷՐ-ՍՏԵՓԱՆԵԱՆԻ
եւ ՄԱՐԻ ԷՏԻՐՆԷԼԵԱՆԻ

*մահուան տարելիցին առթիւ, այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, յետ պատարագի :*

*Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները :*

### ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

*Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Խրիմեան դպրոցին մէջ (Իսի) :*

*Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ տեղւոյս կարող ուժերուն :*

*Սիրայօժար իրենց արեւելեան նուագով կը մասնակցին հայրենակիցներ՝* Մ. Շիրվանեան, Շ. Կազեան *(ուտ, ջութակ) : լաւ կերուխում, խնամքով պատրաստուած վարչութեան կողմէ :*

*Մուտքը ազատ է :*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝*

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր :*



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



### ԽՆՋՈՅՔ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին կողմէ, Կիրակի, Դեկտեմբեր* 17, *կէսօրէ ետք ժամը 17ին, Մշակոյթի Տան մէջ:*

Գեղարուեստական բաժին :

*Կը հրաւիրուին ընկերները, Նոր Սերունդի անդամները եւ երէց ու երիտասարդ համակիրներ :*

### ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*ՄԱՐՍԷՅԼ.— Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Թաղիս Ս. Յակոբ եկեղեցւոյ անուան տօնակատարութեան առթիւ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Թաղիս եկեղեցաշէն եւ դպրոցաշէն ազգայիններու հոգւոյն: Յաւարտ Ս. պատարագի տեղի պիտի ունենայ աւանդական մատաղօրհնութիւն ու բաշխումը պիտի կատարուի Ֆ. Կ. Խաչուհիներու կողմէ :*

### ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՌԷՆ

*Այս Կիրակի, առաւօտեան ժամը* 10.30-*ին, Վատիկանի ռատիոկայանէն հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուի հետեւեալ ալիքներու վրայ :*

*Միջին ալիք.—* 196 *մեթր, կարճ ալիք՝* 31.10, 25.55, 19.84:

*Պիտի քարոզէ Գերապատիւ* Ներսէս Ծ. Վ. Սէքեան, *նիւթ ունենալով «ԵԿԵՂԵՑՒՈՅ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԸ» :*

### ՊԱՏԱՐԱԳ ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

*Այս Կիրակի, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյս օծման 4րդ տարելիցը կը տօնուի հանդիսաւոր կերպով: Այս առթիւ Կաթ. Պատուիրակ եւ Փարիզի Առաջնորդ Գերաշ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ հրաւիրուած է պատարագելու եւ քարոզելու : Երգեցողութիւնները պիտի կատարուին բազմաձայն, Մայր Եկեղեցւոյ երգիչներուն մասնակցութեամբ եւ երաժշտապետ Պ. Նշան Սերգոյեանի ղեկավարութեամբ :*

*Յաւարտ Ս. պատարագի մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյս շինութեան ծախքերուն մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց հանգստեան համար: Սկիզբ ժամերգութեան* 8.30, *Ս. պատարագ ժամը 10ին:*

*Շաւիլի եկեղեցւոյ* Շէք-Փոսթալի *թիւն է՝* 14827 - 18, *Փարիզ:*



*ԴՊՐՈՑԱՍԷՐԻ*

## ՏՕՆԱԾԱՌԻ ՀԱՆԴԷՍԸ

17 Դեկտեմբեր, Կիրակի օր
վարժարանին մէջ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի մասնաւոր հանդիսաւոր հոգեհանգիստ կը կատարուի Կրօն. Ընկերակցութեան նախկին ատենապետ ողբացեալ Արամ Թէքէեանի մահուան քառասունքին առիթով, ներկայութեամբ իր ընտանեկան պարագաներուն: Ս. պատարագի եւ հոգեհանգիստի արարողութիւնները կը կատարուին Տ. Խորէն քհնյ. Ասատուրեանի, Տ. Ատոմ քհնյ. Իյճեանի եւ Գաբրիէլ Ա. Սարկ. Լուսարարեանի կողմէ, մասնակցութեամբ դպրախումբին: Ողբացեալին յիշատակը յարգողներ կը հրաւիրուին ներկայ գտնուիլ :*

× *Վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ փոխան ծաղկեպսակի շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.*

*— Տիկին Կեմալմազեանի յուղարկաւորութեան առիթով՝ Պ. Պանտիկեանէ* 10 *Ն. Ֆ.: Մարսէյլի Աղքատախնամին՝ Պ. Պ. Պանտիկեանէ քսան, Շ. Թահմիզեանէ տասը, Գրիգորեանէ եւ Փալամուտեանէ տասնական: Ողբացեալ Վաղարշ Թարգմանեանի յուղարկաւորութեան առիթով՝ Մ. Գունտուրաճեանէ քսան, Ս. Գասպարեանէ տասը: Աղքատախնամին՝ Մ. Գոնտուրաճեանէ քսան, Ս. Գասպարեանէ տասը: Ողբացեալ Միհրան Պատիկեան հոգեհանգիստին առիթով՝ Տէր եւ Տիկին Մենծիկեանէ տասը Ն. Ֆ.:*





### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ :*

*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ահարոնեան ակումբին մէջ: Բոլոր անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է :*

*ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէի բոլոր ընկերները կը հրաւիրուին ընկերական ընդհ. ժողովի, այս Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլան Կ. Կոմիտէի ներկայացուցիչները:*

*ՏԷՍԻՆ.— Հ. Յ. Դ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 20ին : Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ներկայ ըլլալ :*

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը, այս Շաբաթ, կէսօրէ վերջ, սովորական ժամուն, սովորական վայրը :*

*ՃԻՊՈՒՅԼԻ Նախկին սանուց (Յուշամատեան)ի ժողովը այս Կիրակի, ժամը ճիշդ 3ին, Քատէի սրճարանը : Կարեւոր օրակարգ :*

Այրի Տիկին Շաքէ Թէրզեան, Հրաչ եւ Լէյլա Թէրզեան, Տէր եւ Տիկին Վահան Թէրզեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Տիրան Բամպուքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Խրիմեան եւ զաւակները, Տիկին Միւրաթճէ եւ զաւակը ինչպէս նաեւ ընտանեկան պարագաները սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, հօրեղբօր եւ մօրեղբօր՝

ԹՈՌՆԻԿ ԹԷՐԶԵԱՆԻ

յանկարծական մահը որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 8ին, 54 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Շաբաթ, ժամը 14·30ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պոնտիի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Սուլթան Փափազեան, Տէր եւ Տիկին Յովհ. Յովհաննէսեան, Պ. Կարապետ Փափազեան եւ ընտանեկան պարագաներ չափազանց զգացուած շնորհակալութիւններ կը յայտնեն «Յառաջ»ի խմբագրութեան եւ պաշտօնէութեան, Հ. Յ. Դ. Արեւմտ. Եւրոպայի Կեդր. Կոմիտէին, Փարիզի Շրջ. կոմիտէին, Ալֆորվիլի Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին, Ալֆորվիլի Հայ Մարզականին, Թաղեցիներուն, Հայ Մշակոյթի Տան նուիրատուներուն եւ բոլոր անոնց որոնք ծաղկեպսակներով, նամակներով եւ իրենց ներկայութեամբ մասնակից եղան իրենց վշտին, ողբացեալ՝

ԲԱՐԹՈՂ ՓԱՓԱԶԵԱՆԻ

մահուան առթիւ:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Վիէնի Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը եւ բոլոր ընկերուհիները իրենց խորազգած ցաւակցութիւնները կը յայտնեն Տէր եւ Տիկին Գարբ. Գինոսեանի, իրենց զաւակներուն եւ ընտանեկան պարագաներուն, իրենց զաւկին, քրոջ եւ ազգականին՝ Ընկերուհի Օր. ԱՐՄԵՆՈՒՀԻ ԳԻՆՈՍԵԱՆԻ վաղահաս եւ անակնկալ մահուան առթիւ:

Այս տխուր առթիւ, փոխան ծաղկեպսակի, վարչութիւնս քսան Ն. Ֆ. կը յատկացնէ Մշակոյթի Տան:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Անիէռ – Պուա Քոլոմպի Կապ. Խաչի մասնաճիւղը ողբացեալ Արշակ Պագըր – ճեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրէ երեսուն Ն. Ֆ. Մշակոյթի Տան:

Նմանապէս Անիէռ – Պուա Քոլոմպի Կապոյտ Խաչի մասնաճիւղը ողբացեալ Գառնիկ Մառուկեանի մահուան առթիւ կը նուիրէ երեսուն Ն. Ֆ., փոխան ծաղկեպսակի Մշակոյթի Տան:

×

Անիէռէն Տէր եւ Տիկին Ա. Աւետիսեան ողբացեալ Արշակ Պագըրճեանի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն քսան Ն. Ֆ.: Կապոյտ Խաչի օղափոխութեան կայանին:

(Ստանալ «Յառաջ»էն):



ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ: Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ-պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16 – 24, Ամպասատէօրի սրահին մէջ:


Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)




## ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբին կողմէ, Կիրակի, Դեկտեմբեր 17, կէսօրէ ետք ժամը 17ին, Մշակոյթի Տան մէջ:

Գեղարուեստական բաժին:

Կը հրաւիրուին ընկերները, Նոր Սերունդի անդամները եւ երէց ու երիտասարդ համակիրներ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի շրջանի տարեկան ցերեկոյթը, ԿԻՐԱԿԻ, 4 ՄԱՐՏ, 1962

կէսօրէ վերջ ժամը 14·30ին, Սալ տը լա Շիմի:

×

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ







## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները:

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ:

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն Յառաջի վարչական գործը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
ՅԱՌԱՋԻ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քաղէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28–ին, Հինգշաբթի օր:

### ՊԱՏԱՐԱԳ ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյս օծման 4րդ տարելիցը կը տօնուի հանդիսաւոր կերպով: Այս առթիւ Կաթ. Պատուիրակ եւ Փարիզի Առաջնորդ Գերաշ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ հրաւիրուած է պատարագելու եւ քարոզելու: Երգեցողութիւնները պիտի կատարուին բազմաձայն, Մայր Եկեղեցւոյ երգիչներուն մասնակցութեամբ եւ երաժշտապետ Պ. Նշան Սերգոյեանի ղեկավարութեամբ:

Յաւարտ Ս. պատարագի մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյս շինութեան ծախքերուն մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց հանգստեան համար: Սկիզբ ժամերգութեան 8·30, Ս. պատարագ ժամը 10ին:

Շաւիլի եկեղեցւոյ Շէք – Փօսթալի թիւն է՝ 14827 – 18, Փարիզ:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ահարոնեան ակումբին մէջ: Բոլոր անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէի բոլոր ընկերները կը հրաւիրուին ընկերական ընդհ. ժողովի, այս Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլան Կ. Կոմիտէի ներկայացուցիչները:

ՏԷՍԻՆ.— Հ. Յ. Դ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 20ին: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ներկայ ըլլալ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը, այս Շաբաթ, կէսօրէ վերջ, սովորական ժամուն, սովորական վայրը:

ՃԻՊԷՅԼԻ Նախկին սանուց (Յուշամատեան)ի ժողովը այս Կիրակի, ժամը ճիշդ 3ին, Քաղէի սրճարանը: Կարեւոր օրակարգ:

### ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Խրիմեան դպրոցին մէջ (Իսի):

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ տեղւոյս կարող ուժերուն:

Սիրայօժար իրենց աբեւլեան նուագով կը մասնակցին հայրենակիցներ՝ Մ. Շիրվանեան, Շ. Կազեան (ուտ, ջութակ): լաւ կերուխում, խնամքով պատրաստուած վարչութեան կողմէ:

Մուտքը ազատ է:

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:



## ՆՈՒԷՐՆԵՐ

Այրի Տիկին Աննիկ Պազրճեան եւ աղջիկը Արմենուհի, իրենց ամուսնոյն եւ հօր ԱՐՇԱԿ ՊԱԳՐՃԵԱՆի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.—

Դպրոցասէրի Ծնող. Միութեան հրդեհի սանդուխին շինութեան համար 50 Ն. Ֆ., Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին երեսուն, Արմենուհին իր սիրելի Դպրոցասէրին երեսուն, Արմենուհին Օղափոխութեան կայանին Պէլ Ֆոնթէն 20, Եկեղեցւոյ Կրթ. ձեռնարկներուն համար քսան, Ազգատախնամին քսան, «Հայ-Բոյժ»ին բարգաւաճման համար քսան, Մշակոյթի Տան, Շ. Միսաքեան սրահին քսան Ն. Ֆ.: Ընդհ. գումար 210 Ն. Ֆ.:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ատրինէ Շաքարեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հրանտ Սամուէլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Ձէյթունլեան եւ զաւակները, ինչպէս նաեւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որ անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ՄՈՎՍԷՍ ՇԱՔԱՐԵԱՆԻ

ցաւնալէտ մահուան առթիւ:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները:

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ:

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացընեն Յառաջի վարչական գործը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
ՅԱՌԱՋԻ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քաւէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)











## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Պուլ. Օտոյի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ իր ընկերուհիին Այրի Տիկին Վերգին Յակոբեանի եւ զաւակներուն իրենց ամուսնոյն եւ հօր, ՄԵԼՔՈՆ ՅԱԿՈԲԵԱՆի մահուան առթիւ։

Այս առթիւ վարչութիւնս փոխան ծաղկեպսակի քսան Ն. Ֆ. նուիրած է տեղւոյս եկեղեցիին։

Նոյն առթիւ վարչութիւնս շնորհակալութեամբ ստացած է փոխան ծաղկեպըսակի 10 Ն. Ֆ. Պ. Տէր Վարդանեանէ եւ 10 Ն. Ֆ. Պ. Անդրանիկ Յակոբեանէ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.—

Տէր եւ Տիկին Կարապետ Պօյաճեան, իրենց մօր հանգուցեալ Վարդուհի Զաքեանի մահուան տարելիցին առթիւ Լիոնի եկեղեցւոյ շինութեան կը նուիրեն 30 Ն. Ֆ., Ոմն իր ապաքինման առթիւ 30։ Տէր եւ Տիկին Սիլվէն Պօյաճեան իրենց երկրորդ զաւկին Սիլվիի ծննդեան առթիւ յիսուն Ն. Ֆ.։

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Տոքթ. Սեդա Թիրիաքեան (նախկին արտաքին բժիշկ հիւանդանոցներու) կը տեղեկացնէ իր յաճախորդներուն թէ իր հասցէն է՝ 36 Րիւ Ռասփայ, Ալֆորվիլ։

ՀԵՌԱՁԱՅՆ.—

ENT. 18-20



# Օրեր եւ Ժամեր

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները։

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ։

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացընեն Յառաջի վարչական գործը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՅԱՌԱՋԻ

## ՆՈՒԷՐ

Մարինա Թորոսեանի եւ Օննիկ Բարիլուսեանի ամուսնութեան առթիւ Տէր եւ Տիկին Ֆաքիրեան տասնական Ն. Ֆ. կը նուիրեն «Հայ-Բոյժ»ին եւ Որբերու Օգն. Մարմնին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

×

Ոմն Տիկին մը կը նուիրէ տասնական Ն. Ֆ. հանգստեան տուներուն, 10 Ն. Ֆ. Շ. Միսաքեան սրահին, քսան Ն. Ֆ. եկեղեցիին մոմի համար։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Ստիպողաբար լաւ սթէնօ – տաքթիլօ մը որոշ փորձառութիւն ունեցող եւ վարժ գրասենեակի գործերու։ Դիմել անձամբ ՅԱՌԱՋին։





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը։

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28ին, Հինգշաբթի օր։

## ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԷՍ

Ի պատիւ Վալանսի եւ շրջակայից Հայութեան։

Նախաձեռնութեամբ Հայ Առաք. Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ Հոգաբարձութեան։

Այս Շաբաթ, ժամը 21ին, Վալանսի Պետական Թատրոնին մէջ։

Դպրոցական եւ մանկական սիրուն երգեր ու գեղեցիկ արտասանութիւններ։

Պիտի ցուցադրուի նաեւ Տէր Նարէկ քհնյ. Վարդանեանի ձեռնադրութեան ու օծման ֆիլմը։

Մուտքը ազատ է։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Պուլվ. Օտոյի մասնաճիւղին վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները, այս Զորեքշաբթի կէսօրէ վերջ, ժամը 2ին, սովորական վայրը։ Կարեւոր օրակարգ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հայկազուն Զօրթեան, Տէր եւ Տիկին Յակոբ Խաչատուրեան, Պ. Գրիգոր Զօրթեան, Տէր եւ Տիկին Մարսէլ Փափազեան եւ ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք մասնակից եղան իրենց սուգին՝ ՀԱՅԿԱԶՈՒՆ ԶՕՐԹԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Կաղանդի առթիւ, Պ. Հրանդ Պալեան քսանական Ն. Ֆ. կը նուիրէ Կապոյտ Խաչին, Կարմիր Խաչին եւ Աղքատախնամին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեան, կը հրաւիրուի համայն հայ գաղութը, հոգեւորապէս մխիթարուելու համար :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կրընոպլի Կապ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գրիգոր Ճերմակեանէ յիսուն Ն. Ֆ., իրենց սիրեցեալ մօր, ընկերուհի Տիկին Վասիլուհի Ճերմակեանի մահուան առթիւ :

## ԾՆՈՒՆԴԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկ. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն Կրընոպլի շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ, այս Երկուշաբթի առաւօտ Ս. Ծընընդեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Սալ Սէն Լուի սրահին մէջ, Րիւ ԺԷ: Ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 8·30ին :

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Տոքթ. Սեդա Թիրիաքեան (Նախկին արտաքին բժիշկ հիւանդանոցներու) կը տեղեկացնէ իր յաճախորդներուն թէ իր հասցէն է՝ 36 Րիւ Ռասփայ, Ալֆորվիլ : ՀԵՌԱՁԱՅՆ.— ENT. 18-20

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր ու Ժամեր

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կրընոպլի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, Կիրակի 14 Յունուար, կէսօրէ վերջ, Սալ Սէն Լուի, Րիւ ԺԷ :



## ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԷՍ

Ի պատիւ Վալանսի եւ շրջակայի Հայութեան :

Նախաձեռնութեամբ Հայ Առաք. Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգաբարձութեան :

Այս Շաբաթ, ժամը 21ին, Վալանսի Պետական Թատրոնին մէջ :

Դպրոցական եւ մանկական սիրուն երգեր ու գեղեցիկ արտասանութիւններ :

Պիտի ցուցադրուի նաեւ Տէր Նարեկ քհնյ. Վարդանեանի ձեռնադրութեան ու օծման ֆիլմը:

Մուտքը ազատ է :

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20·30ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը:

Քաւէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28ին, Հինգշաբթի օր :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Պուլվ. Օտոյի մասնաճիւղին վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները, այս Չորեքշաբթի կէսօրէ վերջ, ժամը 2ին, սովորական վայրը : Կարեւոր օրակարգ :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Ամիսը սղաւոր լաւ ռէպիօ - տաքսիօ մը որու փորձառութիւն ունեցող եւ վարժ զրասենեակի գործերու : Դիմել անձամբ ՅԱՌԱՋին :







## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Մարտիրոս Պօյաճեան իրենց սանահօր ողբացեալ Օհաննէս Քիւրքճեանի մահուան տխուր առթիւ 50 Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան :

Նոյն տխուր առթիւ եւ նոյն նպատակին համար նմանապէս կը նուիրեն Այրի Տիկ. Դեղձանիկ Մանուկեան, Տէր եւ Տիկին Հրանդ Հալաճեան, Տէր եւ Տիկին Պետրոս Պետրոսեան, Տէր եւ Տիկին Միհրան Նալչաճեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Պօյաճեան, Տէր եւ Տիկին Մարուքէ Պօյաճեան, Տէր եւ Տիկին Արամ Աշըգկէօզեան քսանական Ն. Ֆ. :

(Ստանալ «Յառաջ»էն) :

### ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի քառասունքի Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Պիտի պատարագէ եւ քարոզէ ՏԷՐ ԳԻՒՏ ՎՐԴ. ՆԱԳԳԱՇԵԱՆ :

Այս Երկուշաբթի Ս. Ստեփանոսի տօնին առթիւ հանդիսաւոր «Այսօր Դաւաք Հրեշտակաց» եւ Ս. պատարագ պիտի մատուցուի : Սկիզբ ժամերգութեան ժամը 9ին : Կը հրաւիրուի հաւատացեալ հայ հասարակութիւնը :

### ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեան, կը հրաւիրուի համայն հայ գաղութը, հոգեւորապէս մխիթարուելու համար :

### ԾՆՈՒՆԴԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկ. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն Կրընոպլի շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ, այս Երկուշաբթի առաւօտ Ս. Ծընընդեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Սալ Սէն Լուի սրահին մէջ, Րիւ ժէ : Ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 8·30ին :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի. Ճրագալոյց Ծնընդեան : Ժամերգութիւն և Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ ժամը 17ին :

Երկուշաբթի՝ Ծնունդ, ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժամը 10ին :

Պիտի պատարագէ եւ քարոզնէ՝ ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍ. ԱՄԱՏՈՒՆԻ

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ԾՆՈՒՆԴԸ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի, Տօնախմբութիւն Ս. Ստեփանոսի, օր՝ Սարկաւագաց եւ Դպրաց :

6 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց Ծընընդեան.— Երեկոյեան արարողութիւն եւ պատարագ ժամը 4ին եւ 5ին :

7 Յունուար, Կիրակի, Տօն Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ արարողութեան ժամը 8, Ս. պատարագ ժամը 10 : Հանդիսաւոր Ջրօրհնէք՝ ժամը 11·45 :

8 Յունուար, Երկուշաբթի, Յիշատակ Մեռելոց.— Սկիզբ ժամերգութեանց ժամը 8·30, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10 :

### ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԵԾ ՀԱՆԴԷՍ

Ի պատիւ Վալանսի եւ շրջակայի Հայութեան :

Նախաձեռնութեամբ Հայ Առաք. Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգաբարձութեան :

Այս Շաբաթ, ժամը 21ին, Վալանսի Պետական Թատրոնին մէջ :

Դպրոցական եւ մանկական սիրուն երգեր ու գեղեցիկ արտասանութիւններ :

Պիտի ցուցադրուի նաեւ Տէր Նարեկ քհնյ. Վարդանեանի ձեռնադրութեան ու օծման ֆիլմը :

Մուտքը ազատ է :

### ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ԻՍԻ–ՔԼԱՄԱՐԻ ՄԷՋ

Ծնընդեան Ճրագալոյցի առթիւ հանդիսաւոր ձայնաւոր պատարագ, տեղական ուժերու երգեցողութեամբ : Այս Կիրակի, ժամը 16·30ին, Սէն Պոլինօ Մատրան մէջ (Րիւ տը Կ'էկալիթէ) :

ՆԱՄԱԿ ՈՒՆԻ.— Հայաստանէն Տիկին Փերուզ Աւետիսեանէ նամակ ունի Պ. Իգնատիոս Հելվաճեան : Դիմել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը :

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28–ին, Հինգշաբթի օր :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20·30ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ : Կարեւոր օրակարգ :

### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ մանդա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները :

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ :

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացընեն Յառաջի վարչական գործը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՅԱՌԱՋԻ



### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Հայաստանէն Պ. Եմէնիճեան որ այժմ Լենինական կը բնակի, կը փնտռէ իր զարմիկները Հրանդ Եէմէնէճեանի որդիները, որոնցմէ մէկուն անունը կը կարծէ թէ Վահրամ է, որոնք ժամանակին Եգիպտոսէն Ֆրանսա եկած են եւ այժմ կը բնակին Փարիզեան շրջաններուն մէջ : Ձիրենք ճանչցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8), հեռաձայնի թիւ էլիզէ 67–03 :



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

ԱՐՄԵՆՈՒՀԻ ՊԵՏԵԱՆ
ՄԱՍԻՍ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ
Նշանուած

Վելիզի 17 Դեկտ. 1961 Պանկէօ

## ՔԱՌԱՍՆԻՑ ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի քառասնից Ս. պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

Պիտի պատարագէ եւ քարոզէ Տէր ԳԻՒՏ ՎՐԴ. ՆԱԳԳԱՇԵԱՆ։

Այս Երկուշաբթի Ս. Ստեփանոսի տօնին առթիւ հանդիսաւոր «Այսօր Դասք Հրեշտակաց» եւ Ս. պատարագ պիտի մատուցուի։ Սկիզբ ժամերգութեան ժամը 9ին։ Կը հրաւիրուի հաւատացեալ հայ հասարակութիւնը։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Հայկազ Պէզազեան, Տէր եւ Տիկին Վահագն Պէզազեան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Տէր-Վարդանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց մօր՝
ՆՈՒԱՐԴ ՊԷԶԱԶԵԱՆԻ
մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

## ԾՆՈՒՆԴԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկ. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն Կրընոպլի շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ, այս Երկուշաբթի առաւօտ Ս. Ծը-նընդեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Սալ Սէն Լուի սրահին մէջ, Րիւ Ժէ։ Ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 8.30ին։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի. Ճրագալոյց Ծնընդեան։ Ժամերգութիւն և Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ ժամը 17ին։

Երկուշաբթի՝ Ծնունդ, ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժամը 10ին։

Պիտի պատարագէ եւ քարոզնէ՝
ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊԻՍ. ԱՄԱՏՈՒՆԻ

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20.30ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը։

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր։

Շաւիլէն օթօքարը կը մեկնի ժամը 13-ին, Փուէն տը Շաւիլէն, կը հանդիպի հայկ. դպրոցը։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Ս. Ստեփանոսի տօնը կը կատարուի օրուան յատուկ երգեցողութիւններու հանդիսաւոր արարողութեամբ։ Ծնողքներ կը հրաւիրուին իրենց երկու սեռէ զաւակները առաջնորդել եկեղեցի, հաղորդութիւն առնելու, եթէ փափաքին զգեստաւորուած։

× Ողբացեալ Արամ Թէքէեանի մահուան քառասունքին հոգեհանգիստին առիթով՝ Տէր եւ Տիկին Ա. Մենծիկեան փոխան ծաղկեպսակի Ազքատախնամին նուիրած են 10 Ն. Ֆ.։

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ԽՍԻ-ՔԼԱՄԱՐԻ ՄԷՋ

Ծնընդեան Ճրագալոյցի առթիւ հանդիսաւոր ձայնաւոր պատարագ, տեղական ուժերու երգեցողութեամբ։ Այս Կիրակի, ժամը 16.30ին, Սէն Պոխնօ Մատրան մէջ (Րիւ տը Կ'էկալիթէ)։

## ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻՒԻ ՄԷՋ

Այս Երկուշաբթի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ Տէօրնէէն Տէր Վարազ քհնյ. Աւագեան, կը հրաւիրուի համայն հայ գաղութը, հոգեւորապէս մխիթարուելու համար։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)









## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է յիսուն Ն. Ֆ., Տիկին Նուարդ Սապոնճեանէ եւ տասը Ն. Ֆ. Տէր եւ Տիկին Եռիզարտաշեանէ Թոռնիկ Թէրզեանի մահուան առթիւ:

## ՆՈՒԷՐ

ՄԱՐԹԻԿԷՆ Տէր եւ Տիկին Արթինեան ընկեր Գրիգոր Գոստիկեանի մահուան առթիւ (Ալֆորվիլ) տասնական Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչի կայանին եւ «Յառաջ»ին: (Ստանալ Յառաջէն):

## Հ. Յ. Դ.

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 20.30ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ: Ներկայ կ'ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը:

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր ժամը 15էն 18:

Խնամուած գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ: Աւանդական ԿԱՂԱՆԴ–ՊԱՊԱՆ փոքրիկներու պիտի բաժնէ նախընթրիք եւ մրգեղէն:

Մանուկներու փոխադրութեան համար օթօքարները կը մեկնին դէպի Փարիզ ժամը 13.30ին հետեւեալ վայրերէն:

Հաւաքուիլ.— ԱԼՖՈՐՎԻԼ Փլաս Քառնօ: ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ՝ Խրիմեան վարժարան Րիւ տը լա Տէֆանս: ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ՝ դպրոցին առջեւ Րիւ Հայկ Դըպիրեան: Միւս մասնաճիւղերու փոքրիկները կը փոխադրուին իրենց միջոցներով:

Շաւիլէն օթօքարը կը մեկնի ժամը 13-ին, Փուէն տը Շաւիլէն, կը հանդիպի հայկ. դպրոցը:

### ՊԱՏԱՐԱԳ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի, տեղւոյս Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ ու քարոզէ Տ. Վազգէն Վրդ. Քէչիշեան: Կը հրաւիրուի բարեպաշտ ժողովուրդը:

## ԾՆՈՒՆԴԻ ԵՒ ՆՈՐ ՏԱՐՈՒՅ

ՈՒՐԱԽ ՕՐԵՐՈՒՆ ԵՒ ԱՄԲՈՂՋ ՏԱՐԻՆ

Եւրոպայի Մեծագոյն Արեւելեան Վաճառատունը

ՊԱՀԼԱՏՈՒՐԵԱՆ խանութ մը չայ-ցելուին սեղանին վրայ ամէնէն համով պատառը կը պակսի՝ մեծին ու պզտիկին համար: ՊԱՀԼԱՏՈՒՐԵԱՆ վաճառատան մէջ պիտի գտնէք աւանդական ընդեղէններու եւ անուշեղէններու ամէն տեսակը, անմրցելի գիներով:

Ապսպրանքի վրայ, ծրարի առաքում Ֆրանսայի ամէն կողմ եւ դէպի արտասահման՝ Պելժիա, Զուիցերիա, Անգլիա:

### ՊԱՀԼԱՏՈՒՐԵԱՆ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ
### LYON

| | |
|---|---|
| 246, Rue Vendôme - | Tél. MO 11-84 |
| 20, Rue Villeroy | MO 32-10 |
| 65, Rue Robert | LA 07-72 |

ԵՒ ԻՆՉՊԷՍ ՄԻՇՏ

Արմաւ, «պամիա», «եալանճի տոլմա», յունական «թուրշի», «պի-պէռ», տերեւ, թահին հելվա, «վանիլլ», չոքոլա, «նուազէթ», «լո-գում», «սազըզ», պխտակ, Շիրակ օղի (41 – 45օ), Իզմիրի չամիչ, «սուճուք», կեսարական «պաստըրմա»: առաջնակարգ սուրճ, (քարավան եւ մոքա), համեմներ «մահլէպ», «սալէպ», ձիթապտուղ, ձէթ, «քաշքավալ» պուլկարական, ճերմակ պանիր ոչխարի կաթով: Ամէն կարգի պահածոներ, «քուսքուս», հարիսա, սումագ, թարամա, լաքերտա, բաքլաւա, քատայիֆ, տերեւ եւայլն:

### ՊԱՀԼԱՏՈՒՐԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

Ունի նաեւ մսավաճառատուն մը, որուն առաջնակարգ միսերը գոհացում կուտան ամէնէն նրբաճաշակներուն: Ոչխարի, հորթի եւ եզան միս (քաշուած միս, եւայլն):

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)



## ROSY ARMEN

PREMIER ENREGISTREMENT QUI VIENT DE SORTIR
Premier passage à la TV dans l'émission «L'Ecole des Vedettes»
Deux succès ont suffi pour faire de Rosy Armen
l'un des plus grands noms de la chanson moderne
Vous pourrez voir et écouter cette sensationnelle découverte des

## Disques VOGUE

Le Dimanche 24 Décembre au cours du réveillon de Noël donné dans la Salle des Fêtes d'Alfortville
R SY ARMEN sera accompagnée par Jean.Claude PELLETIER et son orchestre.

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ տեղւոյս Կրթական Մարմնի
Հովանաւորութեամբ Ս. Պ. Պ. Եկեղեցւոյ Հոգաբարձութեան
Տեղի կ'ունենայ Կիրակի 24 Դեկտեմբեր 1961
Երեկոյեան ժամը 21էն մինչեւ լոյս
SALLE VOLTAIRE ի մէջ
Պատւոյ նախագահութեամբ Քաղաքապետ
**Monsieur BLEUSE ի**

Մասնակցութեամբ

**ROSY ARMEN ի**

**Vedette des disques Vogue**

**Jean-Claude Pelletier et son Quartett**
ՍՊԱՆԱԿԱՆ ՊԱՐԱԽՈՒՄԲ **Elias de Quiros**
ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ **VECCIANA**

ՃՈԽ ՊՈՒՖԷ

Հրաւիրատոմսերը ստանալու համար դիմել.—
CAFÉ PHILIPPE, 6 Bd. Carnot, Alfortville, Tél. ENT. 61-35

## GRAND RÉVEILLON
## du Nor Séround

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԱԿՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ
ԿԻՐԱԿԻ, 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ
ԺԱՄԸ 21էՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ
Հայ Մշակոյթի Տան մէջ 17, Rue Bleue, Paris (9e)
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

**Jeux** **Ambiance féerique** **Cotillons**

Մուտք եւ ճաշ 15 Ն. Ֆ.

**Լօխում Հէլվա Թահին**

**Bongoût**

USINE à SAINT-MENET (B.-du-R.)
DANS TOUTE ÉPICERIE SPÉCIALISÉE

★ GROS : Sté DES CONSERVES "BONGOUT", 40, LA CANEBIÈRE - MARSEILLE



## ՃԱՇԱՐԱՆ
## ԵԱՐ

ՀԻՄՆԱԴԻՐ ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ

Եւրոպական, հայկական եւ կովկասեան ընտիր ճաշեր:

Առաջնակարգ կովկասեան խորոված-ներ, շաշլիք, քարսքի:

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

**Bar Américain**

AU CŒUR MÊME DES CHAMPS-ÉLYSÉES
4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS - 8e
Téléphone : BAL. 31-21
Métro : F. D. Roosevelt

Այրի Տիկին Տիգրան Օնոսեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Օնոսեան, Տէր եւ Տիկ. Յովհաննէս Օնոսեան եւ ընտանեկան պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՏԻԳՐԱՆ ՕՆՈՍԵԱՆԻ
(Ուրփացի)

յանկարծական մահը որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 21ին, 57 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի առաւօտ ժամը 8·30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Թիամարի հին գերեզմանատունը:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

Հասցէ.— 18/32 Ավընիւ Էմիլ Պուբրու (Մոնրուժ):

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ԻՍԻԻ յանձնախումբին հանգանակութիւնը ի նպաստ Մշակոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահին.—

Բարթող Սէրխօշեան 250 Ն. Ֆ., Գէորգ Շահինեան 200, Ներսէս Գչիքեան 200, Ստեփան Միսաքեան 150, Քէնան Ադատեան հարիւր, Աւետիս Քիրէմիտճեան յիսուն, Կիւլպէնկ Ասլանեան, Գաբրիէլ Պալապանեան, Գէորգ Ալէքսանեան, Յարութիւն Շիրվանեան, Հրաչ Հանտալեան, Հայկ Սէրխօշեան հարիւրական Ն. Ֆ., Արմենակ Թորիկեան, Խաչիկ Քէօշկէրեան, Ղուկաս Փիլիպպոսեան, Վահան Դարբինեան, Բարսեղ Հայպէչեան, Կարապետ Թօփալեան, Արիս Գարաեան, Յարութիւն Պաղամեան, Եղիազար Մինասեան, Սէրճիվան Շէրպէթճեան յիսունական Ն. Ֆ., Նշան Դարբինեան քսան, Լութվիկ Գաչըքճեմանեան յիսուն, Արամ Էմիրզէեան յիսուն, Մովսէս Քալոյեան քսան, Վահան Զըպուքեարեան 10 Ն. Ֆ.:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Իսիի Հայ Մշակոյթի Տան յանձնախումբը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ներսէս Գչիքեանէ հարիւր Ն. Ֆ. Սողոմոն Թէհլիրեան սրահի սարքաւորման համար, իրենց զաւկին Գէորգ Գչիքեանի Ալժերիայէն ողջ եւ առողջ վերադարձին առթիւ, ընկերը սոյն յանձնախումբին հանգանակութեան մասնակցած էր արդէն երկու հարիւր Ն. Ֆ.ով:

« ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ ԲՈԼՈՐԻՆ ՀԱՄԱՐ »

Այս Չորեքշաբթի իրիկուն, սովորական ժամուն, ֆրանսական պատկերասփիւռի «Ընթերցումներ բոլորին համար» յայտագրին ընթացքին Փիէր Տէկրօփ պիտի ներկայացնէ Վիքթոր Կաստոն եւ իր Բ. վէպը՝

Le Chevalier à l'Emeraude

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը:

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28ին, Հինգշաբթի օր ժամը 15էն 18:

Խնամուած գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ: Աւանդական ԿԱՂԱՆԴ – ՊԱՊԱՆ փոքրիկներու պիտի բաժնէ նախընթրիք եւ մրգեղէն:

Մանուկներու փոխադրութեան համար օթօքարները կը մեկնին գէպիՓարիզ ժամը 13·30ին հետեւեալ վայրերէն:

Հաւաքուիլ.— ԱԼՖՈՐՎԻԼ Փլաս Քատնօ: ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ՝ Խրիմեան վարժարան Րիւ տը լա Տէֆանս: ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ՝ դպրոցին առջեւ Րիւ Հայկ Դըպիրեան: Միւս մասնաճիւղերու փոքրիկները կը փոխադրուին իրենց միջոցներով:

Շաւիլէն օթօքարը կը մեկնի ժամը 13ին, Փուէն տը Շաւիլէն, կը հանդիպի Հայկ. դպրոցը:

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԹԱՆԿԱԳԻՆ ՆՈՒԷՐ ՄԸ

ՀԱՅԿԱԿԱՆ
ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ

... « Հայերս հպարտութեամբ կրնանք գիտել եւ ուրիշին ցոյց տալ այս հատորը, արուեստասէր օտարները եւս հիացումով պիտի թղթատեն հայ հանճարին գովքը հիւսող՝ մանրանկարչութեան այս մեծ հայաշունչ մատեանը..»:

ՀԱՅԱՍՏԱՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՈՒԱԾ՝ ՓԱՐԻԶ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ

Անտիպ եւ գունաւոր նկարներով

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՇՔԵՂ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ

Մեծադիր փառաւոր հատոր մը, 200 էջ, 100 արտատպում:

ԳԻՆ 120 Ն. Ֆ.

ԴԻՄԵԼ

**« HARATCH », 32 Rue de Trévise, PARIS (IX·)**

**MORY et Cie**

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ:

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք: Նուազագոյն ծախքերով կը ղրկենք Խորհրդ. Միութիւն:

Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10·**

(PRÈS DE LA GARE DU NORD)

**Téléphone : TRU. 27-70**

ԾՆՈՒՆԴԸ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

6 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց Ծննդեան.— Երեկոյեան արարողութիւն եւ պատարագ ժամը 4ին եւ 5ին:

7 Յունուար, Կիրակի, Տօն Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ արարողութեան ժամը 8, Ս. պատարագ ժամը 10: Հանդիսաւոր Ջրօրհնէք՝ ժամը 11·45:

8 Յունուար, Երկուշաբթի, Յիշատակ Մեռելոց.— Սկիզբ ժամերգութեանց ժամը 8·30, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

ԴՈՒՔ ՈՐ ՄՏԱԴԻՐ ԷՔ
ՀԱՅԱՍՏԱՆ ԵՐԹԱԼ 1962ԻՆ

ՄԻԱՅՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ ճամբորդութեանց մասնագէտ գործակալութիւն մը կրնայ ձեզի հաճելի արձակուրդ ապահովել լաւագոյն գիներով:

ՀԱՅԱՍՏԱՆ

Փարիզէն խմբական մեկնումներ, Շաբաթ օրերը 30·6, 14–7, 28–7, 11·8 և 1·9

Միեւնոյն ատեն ձեզի նշմարել ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՆԵՐՈՒ երկիրը:

2 ՕՐ ՄՈՍԿՈՒԱ — 14 ՕՐ ԵՐԵՒԱՆ

ԱՌԱՆՑ ՈՐԵՒԷ ՊԱՐՏԱԴԱՐՈՒԹԵԱՆ ՁԵՐ ԿՈՂՄԷ

ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ

**« Tourpol »**

**AGENCE DE VOYAGES INTERNATIONAUX**
**SECTION ARMÉNIENNE**

**21, Rue Bergère, Paris 9· — Métro Montmartre — Tél. PRO, 31-04**

Բաց է ամէն օր, բացի կիրակի օրերէն, ժամը 9էն 12 եւ 14էն 18·30 (Շաբաթ՝ 9էն 12): Հայերէն խօսող պաշտօնեայ ամէն ժամը 17էն 18·30:

Դիմումի վրայ, ձրի կը ղրկենք այս ճամբորդութիւնը նկարագրող մեր թռուցիկները:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Հայ – երաժշտութեան հինգերորդ սկաւառակը MC 20167

**«Promenade en Arménie»**

ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

ԱՐԱ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

(14 կտոր, 45 վայրկեան)

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ, ԽՄԲԵՐԳ, ՄԵՆԵՐԳ

Խաղողաքաղ, Խնչոյքի պահ, Օրօր կանչեմ, Մանուկի երգ, Շորոր, Երեւիդ Մազերը սրմա կումանի, Հայոց գինին, Լեռնական պար, Լուսնակ գիշեր, Կապելայում, Պիւլպիւլը կու կանչէ, Սեւանայ ափին, Եարամօ:

Գեղարուեստական շքեղ եւ գունաւոր կողք, երգերու թարգմանութեամբ եւ բառերով միասին:

Ստանալու համար դիմել Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆԻ,
14, Rue Petit, Paris 19 (BOT. 99-22)
կամ Եկեղեցւոյ գիւանատունը

Փնտռել նաեւ նախորդ սկաւառակները՝ 20103, 20136, 20157, 20162,
եւ պատարագները Եկմալեան 20114, Կոմիտասեան 20150

Գաւառներու համար խնամուած ծրարով առաքում,
**Contre Remboursement**
ԳԻՆ 30 Ն. Ֆ.

ԵՒՐՈՊԱՅԻ
ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ
ՀԷԼՎԱ ԹԱՀԻՆ
ԼՕՔՈՒՄ ՇԱՐՈՑ
ՍՈՒՍԱՄ (ՌՈՃԻԿ)
ՀԷԼՎԱ ՎԱՐԴԷ–ԱՆՈՅՇ
LE BOSPHORE
MARQUE DEPOSEE
ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...
CHOC-ALVA · CHOCO-LOC
Sté le BOSPHORE
SIÈGE SOCIAL
2, Rue Louis Astouin /Marseille (2ème)

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒՆ,

ՀԱՅԿԱԿԱՆ ՍԵՂԱՆ ՉԿԱՅ

ԱՌԱՆՑ

ՀԱՅԿԱԿԱՆ ԱՆՈՒՇԵՂԷՆՆԵՐՈՒ

ՈՐՈՆՑ ՄԻԱԿ ՎԱՐՊԵՏՆ Է՝

ՍՏԵՓԱՆ ՄԱՐԳԱՐԵԱՆ

**32, Rue de Trévise, PARIS (9·) TAI. 65-44**

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Դաշնակահարուհի Իռէն Ֆարշեան, առաջին մրցանակաւոր ձայնասփիւռի ազգային մրցումին պիտի նուագէ մաս – նակցութեամբ Շուֆօ նուագախումբի եւ զանազան գործիքներու առաջին մրցա– նակաւորներու: Այսօր Զորեքշաբթի ժա– մը 3ը 10 անց, Ֆրանսաբ. միջին ալիքնե– րու վրայ: Յայտագիր՝ O Ռօյօմ տը լա Միւզիք:

## ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ Ս. ՄՆՆԴԵԱՆ

Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ
(ՆԻՍ)

Այս Կիրակի, Նոր Տարի, սկիզբ ժա – մերգութեան ժամը 9: Ս. պատարագ ժա– մը 10·30:

5 Յունուար, Ուրբաթ, Առաւօտ, սկիզբ ժամերգութեան ժամը 9, Ճրագալոյց ժամը 15·30, Ս. պատարագ 16·30ին:

6 Յունուար, Շաբաթ, Ծնունդ եւ Մկրտութիւն, սկիզբ ժամերգութեան ժամը 8, Ս. պատարագ 10·30:

7 Յունուար, Կիրակի, Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 9, Ս. պատարագ եւ հո– գեհանգիստ 10·30:

ԾԱՆՕԹ.— Շրջանիս հոգեւոր հովիւը Մեռելոցի օրը ժամը 14ին պիտի զտնուի Գոզատի գերեզմանատունը, ննջեցելոց գերեզմանօրհնէքի համար:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Նիսի Երիցատան բարերարներ Գալուստ եւ Նուարդ Կիւլպէնկեանի եւ Կիւլպէնկ – եան գերդաստանի բոլոր ննջեցելոց հա – մար հոգեհանգստեան արարողութիւն պիտի կատարուի այս Կիրակի, յաւարտ Ս. պատարագի: Հոգեհանգիստ պիտի կատարուի նաեւ Նիսի եկեղեցւոյն այլ բարերարներուն եւ ի մասնաւորի վար – չութեանս ատենապետ Նորոզ հանգուց – եալ Արամ Թէքէեանի համար, այս վերջ– նոյն մահուան քառասունքին լրման առթիւ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Մանուկներու Օր»ը տեղի կ'ունենայ 28 Յունուար, Կիրակի, Րիւ տիւ Նուառի սրահին մէջ:



## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փա– րիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը:

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28 – ին, Հինգշաբթի օր ժամը 15էն 18:

Խնամուած գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ: Աւանդական ԿԱ – ՂԱՆԴ – ՊԱՊԱՆ փոքրիկներու պիտի բաժնէ նախընթրիք եւ մրգեղէն:

Քլոուններ՝ ՖՐԷՏ եւ ՓՕՓՕԼ եւ ՍԻԼ – ՎԻՕ եւ իր ՇՈՒՆԵՐԸ:

Մանուկներու փոխադրութեան համար օթօքարները կը մեկնին դէպիՓարիզ ժա– մը 13·30ին հետեւեալ վայրերէն:

Հաւաքուիլ.— ԱԼՖՈՐՎԻԼ Փլաս Քառ– նօ: ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ՝ Խրիմեան վար – ժարան Րիւ տը լա Տէֆանս: ՊԱՆԵԽՕ ՔԱՇԱՆ՝ դպրոցին առջեւ Րիւ Հայկ Դը – պիրեան: Միւս մասնաճիւղերու փոք – րիկները կը փոխադրուին իրենց միջոց – ներով:

Շաւիլէն օթօքարը կը մեկնի ժամը 13– ին, Փուէն տը Շաւիլէն, կը հանդիպի հայկ. դպրոցը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԴպրոցասէրՏիկնանց վարժարանի վար– չութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Օր. Ալիս Գա – րայեան (Քանատա) յիսուն տոլար: Պ.Պ. Վ. եւ Ռ. Տէր Դաւթեան 250 Ն. Ֆ.: Ա– րամ Սարգիսեան (Անկէն) հարիւր Ն.Ֆ.: Տէր եւ Տիկին Մարանկօզեան յիսուն, ի– րենց մօրը եւ տիկին Մուրատի յիշատա – կին: Ոմն յիսուն, ողբացեալ Յովհաննէս Քիւրքճեանի յիշատակին: Տիկին Նշան– եան, Րէնսի երեսուն, Պ. Սերբեան (Իսի լէ Մուլինօ) երեսուն, Օր. Սթելլա Պա – գըրճեան երեսուն, իր հօր, ողբացեալ Արշակ Պագըրճեանի յիշատակին: Տիկին Ետիքարտաշեան տասը, փոխան ծաղիկի Թոռնիկ Թէրզեանի մահուան առթիւ:

Տիկին Վ. Ջըրաշեան երկու սնտուկ շամիչ եւ մէկ սնտուկ թուզ: Պ. Պ. Մ. Ծիյէրճեան երկու եւ Պ.Ֆրէնկեան 1 սալ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՆՈՒԷՐ

Տիկին Լեւոն Փափազեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ծերանոցին, Տիկին Բերսաբէ Փափազեանի մահուան առթիւ: (Ստանալ «Յառաջ»էն):

« ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ ԲՈԼՈՐԻՆ ՀԱՄԱՐ »

Այս Զորեքշաբթի իրիկուն, սովորական ժամուն, ֆրանսական պատկերասփիւռի «Ընթերցումներ բոլորին համար» յայ – տագրին ընթացքին Փիէր Տէկրօփ պիտի ներկայացնէ Վիքթոր Կառոոն եւ իր Բ. վէպը՝

Le Chevalier à l'Emeraude

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՊԱՆԵԽՕ – ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Ար – ծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբ– թի ժամը 20ծ30ին, ծանօթ հաւաքատե – ղին: Կարեւոր օրակարգ:

ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի ժողովը այս Զորեքշաբթի երեկոյեան ժամը 9ին, սովորական հա – ւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

Գ. ԺԻՐԱՅՐ ԵՐԱՆԵԱՆ
Օր. ԻՌԷՆ ՍՕՊԱՆՍՔԻ
Նշանուած
Պուա Քոլոմպ 24 Դեկտ. 1961 Քոլոմպ

ՎԱՐԴՈՒՀԻ ՔԷՇԱՊԵԱՆ
ԸՆԿ. ՄԱՐՏԻՐՈՍ ՕՀԱՆԵԱՆ
Ամուսնացած
Շավիլ 27 Նոյ. 1961 Սէն Շամոն

Այս ուրախ առթիւ Սէն Շամոնէն Տէր եւ Տիկին Սարգիս Քէշապեան կը նուիրեն Փարիզի Մշակոյթի Տան յիսուն Ն. Ֆ., Շավիլի դպրոցին երեսուն, Շավիլի Նոր Սերունդին քսան, Տէր եւ Տիկին Կղեմէս Օհանեան Մշակոյթի Տան երեսուն, Շավիլի Կապ. Խաչին քսան Ն. Ֆ.:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէն Ժերմէի Թաղ. Խորհուրդը իր թաղեցիներէն ողբացեալ Սուքիաս Նիկողոսեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի խորին շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, ի նպաստ Թաղիս եկեղեցւոյ եւ դպրոցին: Պ. Պ. Պետրոս Սահակեան, Աւետենց ընտանիք, Պառ Թինէլ, Պ. Ժան քսանական Ն. Ֆ.: Տէր Մինասեան Նուպար, Գուրգէն Կարապետեան, Եդուարդ Ճեհրեան, Միհրան Սահակեան, Տելի Պօյաճեան ընտանիք, Սարգիս Տուլթլուեան, Հայկ Զուգորեան, Անոռէ Ժիւլիէն, Պառ Անթուան, Գողաեան ընտանիք 10ական Ն. Ֆ.: Իսկ Յ. Ճրըքեան, Ս. Մինասեան, Մելքմէճեան, Աբրահամ, Յարութիւն Նեվշէհիրլեան, Օննիկ Նիկողոսեան, Աբրահամ Մանկասարեան հինգական Ն. Ֆ. եկեղեցւոյ պայծառութեան: Պ. Պ. Հայկ Մկրտիչեան, Յովհաննէս Մարգարեան, Բիւզանդ Փափազեան, Կարպիս Աճէմեան, Թովմաս Մարկոսեան, Վարուժան Անտոնեան, Աստուր Արսլանեան, Աւետիս Սանտալեան, Կարապետ Կտաւճեան, Հաճի Յակոբ Ահարոնեան, Յակոբ Պետրոսեան տասնական Ն. Ֆ.: Իսկ Մանուկ Գասպարեան, Կարապետ Կիւլիմիրեան, Այրի Տիկին Սրբուհի Պետրոսեան, Յակոբ Էսկիճեան, Հայկ Վարժապետեան, Գէորգ Այվազեան, (Կարապետ Գարապաշեան, Թաղին աղքատներուն), 5ական Ն. Ֆ. Թաղիս դպրոցին:

### ՆՈՒԷՐՆԵՐ ՆԻՍԻ ԵԿԵՂԵՑԻԻՆ

Վարչութիւնս շնորհակալութեամբ ստացած է հոգեւոր հովիւին ձեռամբ, հետեւեալ նուէրները.— Երգեհոն մը՝ Նուպար Կիւլպէնկեանի եւ քրոջ Տիկ. Ռիթա Եսայեանի կողմէ: Եկեղեցւոյս ելեկտրական ջեռուցման ամբողջական սարքաւորման եւ ելեկտր. ջեռուցումներու բարեփոխութեան ծախքերը՝ Այրի Տիկին Համբիկեանի կողմէ, հանգուցեալ ամուսնոյն ի յիշատակ պատարագի նոր զգեստ մը՝ Արժանթինահայ Ժ. Ճէրէճեանի կողմէ:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր ստացան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները:

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ:

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն Յառաջի վարչական գործը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
ՅԱՌԱՋԻ



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ Մանուկներու Օրը:

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր ժամը 15էն 18:

Խնամուած գեղարուեստական բաժին եւ հաճելի անակնկալներ: Աւանդական ԿԱՂԱՆԴ-ՊԱՊԱՆ փոքրիկներու պիտի բաժնէ նախընթրիք եւ մրգեղէն:

Քլաուններ՝ ՖՐԷՏ եւ ՓՕՓՕԼ եւ ՍԻԼՎԻՕ եւ իր ՇՈՒՆԵՐԸ:

Մանուկներու փոխադրութեան համար օթօքարները կը մեկնին դէպի Փարիզ ժամը 13.30ին հետեւեալ վայրերէն:

Հաւաքուիլ.— ԱԼՖՕՐՎԻԼ Փլաս Քառնօ: ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕ՝ Խրիմեան վարժարան Ռիւ տը լա Տէֆանս: ՊԱՆԵՕ ՔԱՇԱՆ՝ դպրոցին առջեւ Ռիւ Հայկ Դըպիրեան: Միւս մասնաճիւղերու փոքրիկները կը փոխադրուին իրենց միջոցներով:

Շավիլէն օթօքարը կը մեկնի ժամը 13-ին, Փուէն տը Շավիլէն, կը հանդիպի հայկ. դպրոցը:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Պօմոնի մասնաճիւղս շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Կարպիս Սէմիզեանէ 25 Ն. Ֆ., իրենց հօր մահուան առաջին տարելիցի հոգեհանգստեան առթիւ: Պ. Պ. Յ. Հացործեանէ քսան եւ Մեսրոպ Բանքասեանէ 10 Ն. Ֆ., Տիկին Պալթայեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի: Տէրտէրեան եւ Մարանեան ընտանիքներէ քսան Ն. Ֆ. փոքրիկն Ռեժինայի կսկծալի մահուան առթիւ: Նոյնպէս Տիկին Ժօժէն Իշխանեանէ տասը Ն. Ֆ., իր հարսին ապաքինման ուրախ առիթով, Ոմն հինգ Ն. Ֆ.:

## ՆՈՒԷՐ

Ողբ. Պ. Պապըրճեանի մահուան քառասունքին առթիւ Տէր եւ Տիկին Կղէմէս Օհանեան Դպրոցասէրին կը նուիրեն երեսուն Ն. Ֆ.: (Ստանալ Յառաջէն):



## ԱՄԱՆՈՐԻ ԵՒ Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ ՍԷՆ-ՌԱՖԱՅԷԼԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ՄԷՋ

Այս Երկուշաբթի պիտի պատարագէ շրջանիս հոգեւոր հովիւ Տէր Ատոմ քահանայ, երգեցողութեամբ Նիսի փոքրիկներէ բաղկացեալ դպրաց դասին եւ ընկերակցութեամբ երգեհոնի:

Սկիզբ արարողութեան, առաւօտեան ժամը 10ին:

Տնօրէնութիւնը կը հրաւիրէ շրջանիս բոլոր Հայերը:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ս. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ

Ծննդեան 1600ամեակը համազգային շուքով կը տօնուի Մարսէյլի մէջ:

Փետրուար 18ին, Կիրակի կէսօրէ ետք, Քազա տ'Իթալիայի շքեղ թատրոնին մէջ:

## ՍՏԻՊՈՂԱԿԱՆ

Ստիպողաբար երիտասարդ տաքթիլօ մը կ'ուզուի: Անձամբ դիմել Յառաջին որ կուտայ հարկ եղած տեղեկութիւնները:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մէջ:

Օրակարգ.— Շրջ. ժողովի օրակարգերու քննութիւն:

ՊԱՆԵՕ - ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Հինգշաբթի ժամը 20ծ30ին, ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ս. Թէհլիրեան սրահի նուիրատուներու ցանկը (Պորտօ)։

Մ. Թումէկեան 140 Ն. Ֆ., Ա. Քէն – տէրեան 80, Մ. Տօնէրեան 50, Պետ. Քէնտէրեան յիսուն, Կ. Դաւիթեան, Մ. Մաուանճեան, Կ. Տօնէրեան 30ական, Հ. Իչքալացեան քսան, Շ. Սուքիասեան, Ճ. Տօնիկեան, Տիկին Մարկոյեան, Կ. Վարդանեան, Գ. Հալաճեան, Պօղոս Քէնտէրեան տասնական Ն. Ֆ., Տիկին Կարապետեան եւ Մ. Եսայեան 5ական Ն. Ֆ.։

### ՍՏԻՊՈՂԱԿԱՆ

Ստիպողաբար երիտասարդ *տաքթիլօ* մը կ՚ուզուի։ Անմամբ դիմել Յառաջին որ կուտայ հարկ եղած տեղեկութիւնները ։

*ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Այրի Տիկին Գոհար Աղկիւլեան, իր զաւակները եւ բոլոր ազգականները ցաւով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն եւ հօր՝*

### *ԿԱՐԱՊԵՏ ԱՂԿԻՒԼԵԱՆԻ*

*վաղահաս մահը, որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 26ին։ Թաղումը տեղի ունեցաւ Դեկտեմբեր 28ին, Հինգշաբթի օր, Սէն Շամոնի մէջ։*

### *ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ՄԱՂԹԱՆՔ*

*Սեբաստիոյ Մուրատ Ուս. Միութիւնը Նոր Տարուան եւ Ս. Ծննդեան առթիւ կը մաղթէ բարեմաղթանքներ, կեդրոնի եւ մասնաճիւղերու բոլոր իր անդամներուն եւ համակիրներուն, նոյնպէս կը մաղթէ գործի յաջողութիւն եւ առողջութիւն։ Եւ այս առթիւ մասնաւոր շնորհակալութիւններ կը յայտնէ բոլոր այն ազնիւ հայրենակիցներուն, որոնք տասնեակ տարիներէ ի վեր բարոյապէս թէ նիւթապէս աջակցեցան եւ քաջալերեցին այս բարենպատակ ձեռնարկը ։*

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

*Փոն տը Շէրիի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութեան եւ Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը տեղեկացնէ թէ ներկայ վարչութեան տարեշրջանը լրացած ըլլալով, յարմար նկատեց Յունուար 11ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան խորհրդարանի մէջ ընդհ. ժողովի հրաւիրել ։*

*Նախորդ վարչութեան համարատուութենէն վերջ, ընտրուի յաջորդ վարչութիւնը, օրերու անյարմար ըլլալուն պատճառաւ կը խնդրուի ճշդապահ ըլլալ վերոյիշեալ ժամուն ։*

### *ԾՆՈՒՆԴԸ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ*

*6 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց Ծննդեան.— Երեկոյեան արարողութիւն եւ պատարագ ժամը 4ին եւ 5ին։*

*7 Յունուար, Կիրակի, Տօն Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ արարողութեան ժամը 8, Ս. պատարագ ժամը 10 ։ Հանդիսաւոր Ջրօրհնէք՝ ժամը* 11.45։

*8 Յունուար, Երկուշաբթի,* Յիշատակ Մեռելոց.— *Սկիզբ ժամերգութեանց ժամը 8.30, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10։*

### *ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ*

*Կրընոպլի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, Կիրակի 14 Յունուար, կէսօրէ վերջ,* Սալ Սէն Լուի, Րիւ Ժէ ։



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—օ—

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ ժամը* 20.30*ին, Մշակոյթի Տան մէջ։*

*Օրակարգ.—* Շրջ. ժողովի օրակարգերու քննութիւն ։

### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր ստացան եւ* Յառաջի *հաշիւին վրայ* մանտա *մը, դիւրացնելու համար իրենց վճարումները ։*

*Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ։*

*Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացընեն* Յառաջի *վարչական գործը ։*

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
ՅԱՌԱՋԻ

### ԱՄԱՆՈՐԻ ԵՒ Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ ՍԷՆ – ՌԱՖԱՅԷԼԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ՄԷՋ

*Այս Երկուշաբթի պիտի պատարագէ շրջանիս հոգեւոր հովիւ Տէր Ատոմ քահանայ, երգեցողութեամբ Նիսի փոքրիկներէ բաղկացեալ դպրաց դասին եւ ընկերակցութեամբ երգեհոնի ։*

*Սկիզբ արարողութեան, առաւօտեան ժամը 10ին։*

*Տնօրէնութիւնը կը հրաւիրէ շրջանիս բոլոր Հայերը ։*



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### *ՄՕՏ ՕՐԷՆ — ՄՕՏ ՕՐԷՆ*

*Զաւարեան ենթակոմիտէի հովանաւորութեամբ «Շանթ» թատերախումբը պիտի ներկայացնէ մեծ պատրաստութեամբ Ազգ. Տրամը «ՎԱՐԴԱՆԱՆՔԸ», Պօմոնի սրահին մէջ։*

*Մանրամասնութիւններ մամուլով եւ առանձին յայտարարութեամբ ։*

### *ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

### Ս. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ

Ծննդեան 1600ամեակը համազգային շուքով կը տօնուի Մարսէյլի մէջ։

*Փետրուար 18ին, Կիրակի կէսօրէ նաք, Քազա տ՚Իթալիայի շքեղ թատրոնին մէջ։*

×

*ԼԻՈՆ.— «Մանուկներու Օր»ը տեղի կ՚ունենայ 28 Յունուար, Կիրակի,* Րիւ տիւ Նուառի *սրահին մէջ։*







## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։

## ՆՈՒԷՐ

ՎԱԼԱՆՍ.— Ընկեր Ազատ Պալեան իր հօրեղբօր Սեդրակ Պալեանի (Ռումանիա) եւ իր քուրջին (հօրաքրոջ որդի) Յակոբ Հէքիմեանի (Յունաստան) մահուան տխուր առիթով կը նուիրէ տասը Ն. Ֆ. Հայ Մշակոյթի Տան, Սողոմոն Թէհլիրեան սրահին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

Տասը Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման։ 10 Ն. Ֆ. «Հայ-Բոյժ»ի բարգաւաճման։

### ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ՄԱՂԹԱՆՔ

Վալանսէն ընկեր Ազատ Պալեան իր ազգականներուն, հայրենակիցներուն եւ ընկերներուն կը մաղթէ, Շնորհաւոր Նոր Տարի եւ Բարի Կաղանդ։

### ՆՈՒԷՐ ԿԱՊ. ԽԱՉԻ ՕԳՆԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ

Ամերիկայէն Պ. Թուրքէն Մաթէոսեան, Օր. Պէրպէրեանի ամուսնութեան առթիւ կը նուիրէ 12 տոլար։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Եօղկատի շրջաններու Հայր. Միութեան նախաձեռնութեամբ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Երկուշաբթի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ի յիշատակ խալաս որբանոցի նախկին սաներէն որբ. Կ. Սարգիսեանի, Մ. Քէշիշեանի, Կ. Սաճառեանի, Ն. Այանեանի, Ս. Սողոմոնեանի, Մ. Գոնեալկեանի, Մնացականեան եղբայրներու, Կ. Ազարճալըեանի, Գ. Արսլանեանի, Բ. Թորոսեանի, Յ. Յովսէփեանի, Ա. Թորոսեանի, Ս. Մաճառեանի, Կ. Մակարեանի, Յակոբ Պուլտուքեանի եւ բոլոր մոռցուած հայրենակիցներու։

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր։

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Փոն տը Շէրիի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութեան եւ Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը տեղեկացնէ թէ ներկայ վարչութեան տարեշրջանը լրացած ըլլալով, յարմար նկատեց Յունուար 11ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան խորհրդարանի մէջ ընդհ. ժողովի հրաւիրել։

Նախորդ վարչութեան համարատուութենէն վերջ, ընտրուի յաջորդ վարչութիւնը, օղերու անհրաժեշտ ըլլալուն պատճառաւ կը խնդրուի ճշդապահ ըլլալ վերոյիշեալ ժամուն։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ս. ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ

Ծննդեան 1600ամեակը համազգային շուքով կը տօնուի Մարսէյլի մէջ։

Փետրուար 18ին, Կիրակի կէսօրէ եաք, Քաղա տ'Իթալիայի չքեղ Թատրոնին մէջ։

×

ԼԻՈՆ.— «Մանուկներու Օր»ը տեղի կ'ունենայ 28 Յունուար, Կիրակի, Բիւտիւ Նուառի սրահին մէջ։



### ՊԱՏԱՐԱԳ

Այս Երկուշաբթի Նոր Տարուան առթիւ պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։ Սկիզբ ժամերգութեան՝ ժամը 9։ Կը հրաւիրուի հայ հաւատացեալ ժողովուրդը։

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր ստացան եւ Յառաջի հաշիւին վրայ մանտա մը, դիւրացնելու համար իրենց վճարումները։

Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին, թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ։

Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն Յառաջի վարչական գործը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՅԱՌԱՋԻ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կրընոպլի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, Կիրակի 14 Յունուար, կէսօրէ վերջ, Սալ Սէն Լուի, Բիւ ժէ։

### ԾՆՈՒՆԴԸ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

6 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց Ծընընդեան.— Երեկոյեան արարողութիւն եւ պատարագ ժամը 4ին եւ 5ին։

7 Յունուար, Կիրակի, Տօն Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ արարողութեան ժամը 8, Ս. պատարագ ժամը 10։ Հանդիսաւոր Ջրօրհնէք՝ ժամը 11.45։

8 Յունուար, Երկուշաբթի, Յիշատակ Մեռելոց.— Սկիզբ ժամերգութեանց ժամը 8.30, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10։



Imprimerie Spéciale du journal « Haratch » 32, Rue de Trévise, PARIS (9e)

### ՍՏԻՊՈՂԱԿԱՆ

Ստիպողաբար երիտասարդ տաքթիլօ մը կ'ուզուի։ Անձամբ դիմել Յառաջին որ կուտայ հարկ եղած տեղեկութիւնները։

### ՄՕՏ ՕՐԷՆ — ՄՕՏ ՕՐԷՆ

Զաւարեան ենթակոմիտէի հովանաւորութեամբ «Շանթ» թատերախումբը պիտի ներկայացնէ մեծ պատրաստութեամբ Ազգ. Տրամը «ՎԱՐԴԱՆԱՆՔԸ», Պօմոնի սրահին մէջ։

Մանրամասնութիւններ մամուլով եւ առանձին յայտարարութեամբ։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մէջ։

Օրակարգ.— Շրջ. ժողովի օրակարգերու քննութիւն։





### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾՆԱՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

## ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ Ս. ԾՆՆԴԵԱՆ

### ԼԻՈՆ ԵԿԵՂԵՑԻ

ՇԱԲԱԹ երեկոյ, Ճրագալոյց, սկիզբնաւորութիւն ժամերգութեանց ժամը 4·30–ին:

ԿԻՐԱԿԻ, Ս· Ծնունդ·— Սկզբնաւորութիւն ժամերգութեանց առաւօտեան ժամը 7·30ին :

Պատարագ·— ժամը 10ին: Ջրօրհնէք, ժամը 11ուկէսին:

Սիրով կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանններու բարեպաշտ Հայ ժողովուրդը ներկայ ըլլալու սոյն արարողութեանց :

Այս առթիւ կը խնդրուի մեր հաւատացեալ ժողովուրդէն, բերել իրենց խաչերին բաժինը վառ պահելու համար մեր Ս· եկեղեցին :

×

### ԾՆՈՒՆԴԸ ՓՕՄՈՆԻ ՄԷՋ

6 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց Ծընընդեան·— Երեկոյեան արարողութիւն եւ պատարագ ժամը 4ին եւ 5ին:

7 Յունուար, Կիրակի, Տօն Ծննդեան եւ Աստուածայայտնութեան, սկիզբ արարողութեան ժամը 8, Ս· պատարագ ժամը 10 : Հանդիսաւոր Ջրօրհնէք՝ ժամը 11·45:

8 Յունուար, Երկուշաբթի, Յիշատակ Մեռելոց·— Սկիզբ ժամերգութեանց ժամը 8·30, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 10:

×

### ՏԷՍԻՆ

ՇԱԲԱԹ երեկոյեան ժամը ճիշդ 5ին ժամերգութիւն, ապա ընթերցուածներ, և Ո՜չինչ է պիտոյ, եւ ապա հանդիսաւոր Ճրագալոյցի պատարագ, երկսեռ երգչախումբին կողմէ, մասնակցութեամբ տեղւոյն դպրաց դասուն :

ԿԻՐԱԿԻ առաւօտուն ժամերգութիւն, ժամը 8·30ին, հանդիսաւոր պատարագ ժամը 10ին, Ծննդեան քարոզ 11ին եւ յետ պատարագի հանդիսաւոր Ջրօրհնէք : Դարձեալ երգչախումբին կողմէ դպրապետութեամբ Պ· Գրիգոր Մարտիրոսեանի: Պատարագիչ եւ քարոզ Վարդ· քհնյ· Աւագեան :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան·— Պ· Յակոբ Պէրպէրեանէ իր անուան տօնախմբութեան առթիւ հինգ Ն· Ֆ·, Տէր եւ Տիկին Ք· Յովհաննէսեանէ իրենց զաւկին փոքրիկն Վարդանի մկրտութեան առթիւ յիսուն Ն· Ֆ·:

Լիոնի Ազք· Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Տիկին Մալվինէ Տիմէճեանէ իր մեռելներուն ի յիշատակ երեսուն Ն· Ֆ·:

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կրընոպլի Ֆ· Կ· Խաչի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը, Կիրակի 14 Յունուար, կէսօրէ վերջ, Սալ Սէն Լուի, Րիւ ԺԷ :



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Հ· Յ· Դ· Մարսէյլի Շրջ· Կոմիտէի հրաւիրած ընկերական ժողովներու ·—

Հ· Յ· Դ· Մարսէյլի Շրջ· Կոմիտէն՝ տեղեկագրական ընդհ· ժողովի կը հրաւիրէ հետեւեալ ենթակոմիտէներու եւ խումբերու անդամ ընկեր – ընկերուհիները:

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէ, 6 Յունուար, Շաբաթ երեկոյ, ժամը 21ին :

ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէ, 6 Յունուար Շաբաթ երեկոյ, ժամը 21ին:

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէ՝ 7 Յունուար Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

ԱԿՆՈՒՆԻ ենթակոմիտէ 13 Յունուար, Շաբաթ երեկոյ ժամը 21ին:

ՎԱՐՈՒԺԱՆ խումբ՝ 14 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին :

ՀԱՄԱԶԱՍՊ խումբ՝ 13 Յունուար, Շաբաթ երեկոյ, ժամը 21ին:

ԹԱԹՈՒԼ խումբ՝ 14 Յունուար, կէսօրէ ետք ժամը 15ին:

ԸՆԿԵՐ ԿԱՐՍ խումբ՝ 14 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

ՀԱՅԱՍՏԱՆ խումբ՝ 13 Յունուար, Շաբաթ, ժամը 21ին:

ՎԱՐԴԱՆԴԵԱՆ խումբ՝ 15 Յունուար, Երկուշաբթի, ժամը 21ին:

ԳԷՈՐԳ ՉԱՒՈՒՇ խումբ՝ 20 Յունուար Շաբաթ, ժամը 21ին:

ՄՈՒՐԱՏ խումբ՝ 21 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին:

ՆԻԿՈԼ ԴՈՒՄԱՆ խումբ՝ 21 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք, ժամը 15ին:

ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ խումբ՝ 20Յունուար, Շաբաթ, ժամը 21ին:

Սոյն ժողովները տեղի պիտի ունենան իրենց սովորական հաւաքատեղիները : Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկեր – ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Վարչութիւնները նախապէս պէտք է բոլոր ընկերներուն տեղեկացնեն ժողովներու վայրի եւ թուականի մասին: Ներկայ պիտի ըլլան Շրջ· Կոմիտէի ներկայացուցիչները :



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ս· ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ

Ծննդեան 1600ամեակը համազգային շուքով կը տօնուի Մարսէյլի մէջ:

Փետրուար 18ին, Կիրակի կէսօրէ ետք, Բազա տ'Իթալիայի շքեղ թատրոնին մէջ:

ԵՐԵՒԱՆԻ ձայնասփիւռի հաղորդում – ները նոր ալիքները ·—

Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9ին, 16, 19, 25, 31 եւ 41 մէթր կարճ ալիքներու վրայ: Գրեցէք ձեր տպաւորութիւններն ու ցանկութիւնները: Եթէ կը փափաքիք Երեւան բնակող ձեր ազգականներուն ձայնը լսել, ղրկեցէք անոնց անուններն ու հասցէները Երեւանի Ռատիօ խմբագրութեան: Հասցէ·

Radio-Erévan
Erévan (Armenie) U.R.S.S,

### ՍՏԻՊՈՂԱԿԱՆ

Ստիպողաբար երիտասարդ տաքթիլօ մը կ'ուզուի: Անձամբ դիմել Յառաջին որ կուտայ հարկ եղած տեղեկութիւնները :

### ՄՕՏ ՕՐԷՆ — ՄՕՏ ՕՐԷՆ

Զաւարեան ենթակոմիտէի հովանաւորութեամբ «Շանթ» թատերախումբը պիտի ներկայացնէ մեծ պատրաստութեամբ Ազգ· Տրամը «ՎԱՐԴԱՆԱՆՔԸ», Պօմոնի սրահին մէջ:

Մանրամասնութիւններ մամուլով եւ առանձին յայտարարութեամբ :